# ՁԵՌԱՑ
# ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

## ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ



*ՀԱՅԵՐԷՆ ԵՒ ԱՆԳԼԻԵՐԷՆ*



Բ. ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Տպագրութիւն

«ՊԱՅՔԱՐ»Ի — ՊՈՍՏՈՆ

1931

# THE HANDBOOK

OF

# DIVINE LITURGY

OF THE ARMENIAN APOSTOLIC

HOLY CHURCH



ARMENIAN AND ENGLISH



2ND EDITION

Printed by
BAIKAR ASSOCIATION
Boston, Mass.

1931

Առ ազնուազարմ

Տիարք Մկրտիչ Նաճարեան, ի Բութաքէթ

եւ Հայկազն Նաճարեան, ի Բրավիտէնս

Խորին շնորհակալութիւնս կը յայտնեմ Ձեզ այն նախանձախնդրութեան համար զոր ցոյց տուիք սոյն երկլեզուեան պատարագամատոյցի երկրորդ տպագրութեան առթիւ:

Կ'օրհնեմ զՁեզ եւ կը մաղթեմ Ձեզ ամէն բարօրութիւն:

Առաջնորդ Ամերիկայի Հայոց
ՂԵՒՈՆԴ ԵՊԻՍ. ԴՈՒՐԵԱՆ

Նիւ Եորք
10 Սեպտ. 1931

TO

**MR. MEGERDITCH NAJARIAN**
**Pawtucket**

**AND**

**MR. HAYGAZN NAJARIAN**
**Providence**

On behalf of my people I should like to convey to you my feelings of gratitude and thanks for the excellent zealousness you have shown for the second publication of this bilingual Handbook of Divine Liturgy.

With my sincere blessings and warm good wishes.

Yours Sincerely

✠ LEON TOURIAN
Primate of the Armenian
Church of America

10th Sept. 1931
New York

# Յառաջաբան

ՍՈՅՆ ԵՐԿԼԵԶՈՒԵԱՆ Ձեռաց ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑին պատրաստութեան մէջ ինձ օժանդակ ունեցած եմ Մանչեսթրաբնակ ծանօթ բանասէր Պ. Գառնիկ Ֆնտգլեան, որ փութաց ուղղել Մանչեսթրի նախորդ հովիւներէն Եսայի վրդպ. Աստուածատուրեանցի ի Լոնտոն տպագրել տուած 1887ի Պատարագամատոյցին թարգմանութեան մէջ սպրդած կարգ մը սխալները:

Այն մեծ համոզումը ունիմ թէ սոյն Պատարագամատոյցի հրատարակութեամբ, Հայ անգլիախօս երկսեռ հաւատացեալները մեծապէս պիտի օգտուին անկէ եւ աւելի եւս պիտի ըմբռնեն Հայ Եկեղեցւոյ Ս. Պատարագի խորհուրդին գերազանց վեհութիւնը եւ վսեմութիւնը, եւ անձնաքննութեամբ եւ սրտի ու խղճի մաքրութեամբ պիտի ուզեն կիրակնօրեայ Ս. Պատարագի անխափան ներկայ գտնուիլ՝ հոգւոյ սնունդ ստանալու եւ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի փրկարար մահը պատմելու համար:

Առաջնորդ Հայոց Ամերիկայի
ՂԵՒՈՆԴ ԵՊԻՍ. ԴՈՒՐԵԱՆ

Նիւ Եորք
13 Հոկտեմբեր, 1931



«Զի Աստուծոյ կեցից եւ ընդ Քրիստոսի 'ի խաչ ելից»
(Գաղ. Բ. 19—20)

"That I might live unto God,
I am crucified with Christ" (Gal. II, 19--20)

# Foreward

In the preparation of this bilingual **Handbook** of **Divine Liturgy** I have had the help of the well-known Scholar Mr. K. Funduklian of Manchester, who has had before him the first edition of the Liturgy book published in London in 1887 by the care of the Very Rev. Essaie Astvazadouriants D. D. former Rector of the Armenian Church in Manchester. This first edition was out of print, and the translation needed correcting in not a few places.

I am convinced that having this book in their hands while attending the celebration of Holy Mass, English speaking members of my congregation will profit greatly and realize the solemnity and grandeur of the Mystery which will, when fully understood sink more in their hearts, and move them to attend every Sunday the celebration of Holy Mass, elevating their hearts, and purifying their conscience. And thus fortified in their souls with the Spiritual food they may go comfirmed to their homes and relate to each other the life-giving death of our Lord Jesus Christ.

 LEON TOURIAN
Primate of the Armenian
Church of America

New York
13th Oct. 1931



ՕՐՀՆԵԱԼ ՏԷՐ ՄԵՐ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ։ Ամէն։

*Հայր մեր որ յերկինս ես, սուրբ եղիցի անուն քո։ Եկեսցէ արքայութիւն քո։ Եղիցին կամք քո որպէս յերկինս եւ յերկրի։ Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր։ Եւ թող մեզ զպարտիս մեր, որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց։ Եւ մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն· այլ փրկեա զմեզ 'ի չարէ։ Զի քո է արքայութիւն եւ զօրութիւն եւ փառք յաւիտեանս· Ամէն։*



*Զ'սաղմոսերգութիւնս եւ զաղաչանս ընկալցի մարդասէրն Աստուած 'ի հաճոյս բարերար կամաց իւրոց· մեր մեղաց եւ բազում յանցանացն թողութիւն շնորհեսցէ· 'ի չարեաց փրկեսցէ· 'ի մեղաց պահեսցէ· եւ նմա փառք յաւիտեանս· Ամէն։*



**BLESSED** be our Lord Jesus Christ. Amen.

Our father, which art in heaven, hallowed be Thy name. Thy kingdom come. Thy will be done on earth as it is in heaven. Give us this day our daily bread, and forgive us our trespasses, as we forgive them that trespass against us; and lead us not into temptation; but deliver us from evil. For Thine is the kingdom, and the power and the glory, for ever and ever. Amen.



**MAY** God in his loving kindness to man, accept our psalmodies and supplications as pleasing unto His beneficent will. May He grant forgiveness of our sins and many transgressions, deliver us from evil, and guard us from sin, and glory be to Him for ever. Amen.

ՅՈՐԺԱՄ կամիցի Քահանայն Պատարագ մատուցանել, պարտի խորհրդաբար զգեստաւորիլ: Մտցէ յաւանդատունն հանդերձ սարկաւագօքն, ուր զգեստքն են Պատարագի: Եւ զգեցեալ պաշտօնէիցն ըստ իւրաքանչիւր աստիճանի· եւ մինչ Քահանայն զգենու, դպիրքն երգեն զայս շարական·

*ԽՈՐՀՈՒՐԴ ԽՈՐԻՆ անհաս անսկիզբն· որ զարդարեցեր զվերին պետութիւնդ· ՚ի յառագաստ անմատոյց լուսոյն· գերապանծ փառօք զդասս հրեղինաց:*

*Անճառահրաշ զօրութեամբ· ստեղծեր զԱդամ պատկեր տիրական· եւ նազելի փառօք զգեստաւորեցեր· ՚ի դրախտն Ադենի տեղի բերկրանաց:*

*Չարչարանօք քո սուրբ Միածնիդ· նորոգեցան արարածք ամենայն եւ վերստին մարդն անմահացաւ· զարդարեալ ՚ի զգեստ անկողոպտելի:*

*Անձրեւածին բաժակ հրահոսան· որ հեղար յԱռաքեալսն ՚ի սուրբ վերնատանն, հե՛ղ եւ ՚ի մեզ Հոգիդ սուրբ Աստուած· ընդ պատմուճանի զքո զիմաստութիւն:*

*Տան քում վայելէ սրբութիւն՝ որ զգեցար զվայելչութիւն· սրբութիւն փառաց ընդ մէջ քո ածեալ· պատեա՛ զմէջս մեր՝ ճշմարտութեամբ:*

*Որ զարարչագործ բազուկս քո տարածեցեր ընդդէմ աստեղաց· հաստատեա՛ զբազուկս մեր կարողութեամբ· համբարձմամբ ձեռաց առ քեզ միջնորդել:*

When the Priest intends to celebrate Mass, he must put on vestments privately on this wise. With the deacons, therefore, he goes into the Vestry, where the vestments for Mass are kept. Then the several Ministers being vested, every one according to his order, and while the Priest is robing, the Choir sings the following hymn.

 MYSTERY, deep, unsearchable, eternal! Who hast graced Thy heavenly realm, the legions of fiery spirits, with a veil of light unapproachable.

With wonderful power didst Thou create Adam in lordly image, and didst clothe him in gracious glory in the garden of Eden, the abode of delights.

Through the sufferings of Thine only Begotten Thou hast received all creatures, and again hast made man immortal, adorning him with garment no more to be divested.

O chalice of rain of fire, that wast poured on the Apostles in the holy upper room, pour Thy Holy Spirit upon us also, Thy wisdom together with the garment.

Holiness becometh Thy house, who art clothed in majesty. O that art begirt with the beauty of Holiness, gird also our loins with Truth.

O thou who didst stretch forth thy creating arms even to the stars, strengthen our arms to lift our hands unto Thee to commune with Thee.

*Իխնամամբ Թագ 'ի գլուխ · պատեսցես զմիտս եւ զզգայարանս · խաչանիշ ուրարմամբ ըստ Ահարովնի · ծաղկեալ յոսկեթել 'ի զարդ խորանի :*

*Բամից բոլորից տիրապէս Աստուածպետական, Նախորտապատ սիրով զմեզ զգեստաւորեցեր · քում սուրբ խորհրդոյդ լինել սպասաւոր :*

*Թագաւոր երկնաւոր, զԵկեղեցի քո անշարժ պահեա՛ եւ զերկրպագուս անուանդ քում՝ պահեա՛ 'ի խաղաղութեան :*

Եւ եկեսցեն առաջի սրբոյ Սեղանոյն : Եւ Քահանայն լուասցէ զձեռս ասելով Սաղմոս ԻԵ · կցորդ :

*Լ ուացից սրբութեամբ զձեռս իմ · եւ շուրջ եղէց զսեղանով քով Տէ՛ր :*

*Դա՛տ արա ինձ Տէ՛ր · զի ես յամբծութեան իմում գնացի · 'ի Տէ՛ր յուսացայ · զի մի՛ եղէց հիւանդ :*

*Փորձեա՛ զիս, Տէ՛ր, եւ քննեա՛ զիս · փորձեա՛ զերիկամունս իմ եւ զսիրտ իմ :*

*Ողորմութիւն քո, Տէ՛ր, առաջի աչաց իմոց · եւ հաճոյ եղէց ճշմարտութեան քում :*

*Ոչ նստայց ես յաթոռս նանրաց · եւ ընդ անօրէնս ես ոչ մտից :*

*Ատեցի ես զժողովս չարաց, եւ ընդ ամբարիշտս ես ոչ նստայց :*

With fixing this tire on the head, fix Thou our thoughts and our senses on Thee, this crosswise stole embroidered with golden flowers like that of Aaron, let it be in ornament of the Altar.

Supreme, divine Sovereign of countless multitudes, clothe us in the tunic of love, in order to fit us for the due ministration of Thy mysteries.

Heavenly King, maintain Thy Church unshaken, and keep the worshippers of Thy Name in peace!

Then they all step in front of the Holy Table and the Priest washes his hands, saying Psalm XXVI, (in antiphon).

I WILL wash my hands in innocency; so will I compass Thine altar, O Lord.

Judge me, O Lord, for I have walked in mine integrity: I have trusted also in the Lord therefore I shall not slide.

Examine me, O Lord, and prove me; try my reins and my heart.

For Thy loving kindness is before mine eyes; and I have walked in Thy Truth.

I shall not sit with vain persons; neither will I go in with the wicked.

I hate the congregation of evil-doers, and I will not sit with the ungodly.

*Լուացից սրբութեամբ զձեռս իմ, եւ շուրջ եղէց զսեղանով քով Տէ՛ր։*

*Լսել ինձ զձայն օրհնութեան քո եւ պատմել զամենայն սքանչելիս քո։*

*Տէ՛ր, սիրեցի զվայելչութիւն տան քո. եւ զտեղի յարկի փառաց քոց։*

*Մի՛ կորուսանէր ընդ ամբարիշտս զանձն իմ. եւ մի՛ ընդ արս արիւնահեղս զկեանս իմ։*

*Որոց ձեռք իւրեանց յանօրէնութեան են եւ աջ նոցա լի է կաշառօք։*

*Ես յամբծութեան իմում գնացի. փրկեա՛ զիս, Տէ՛ր, եւ ողորմեա՛ ինձ։*

*Ոտն իմ կացցէ յուղղութեան. յեկեղեցիս մեծս օրհնեցից զքեզ։*

*Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ։*

*Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն։*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Եւ վասն Սրբուհւոյ Աստուածածնին բարեխօսութեանն, Տէ՛ր, ընկա՛լ, զաղաչանս մեր, եւ կեցո՛ զմեզ։*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Սուրբ զԱստուածածինն եւ զամենայն սուրբս բարեխօս արասցուք առ Հայր ի յերկինս, զի կամեցեալ ողորմեսցի եւ գթացեալ կեցուսցէ զարարածս իւր։ Ամենակալ Տէր Աստուած մեր. կեցո՛ եւ ողորմեա՛։*

I will wash my hands in innocency, so will I compass Thine altar, O Lord.

That I may cause the voice of thanksgiving to be heard, and tell of all Thy wondrous works.

Lord, I have loved the habitation of Thy house; and the place where Thy glory dwelleth.

Gather not my soul wth sinners, nor my life with men of blood.

In whose hands is mischief, and their right hand is full of bribes.

But as for me, I will walk in mine integrity: redeem me and be merciful unto me.

My foot standeth in an even place. In the congregations will I bless the Lord.

Glory be to the Father, and to the Son, and to the Holy Ghost.

Now and ever, world without end. Amen.

**Priest.** For the intercession of the Holy Mother of God, O Lord, accept our supplications, and save us.

**Deacon.** Let us make the Holy Mother of God and all the saints, our intercessors with the Father in Heaven, that He will be pleased to have mercy, and, in His pity, to save his creatures Almighty Lord our God, save and have mercy.

*ՔԱՀԱՆԱՅՆ· Ընկա՛լ, Տէ՛ր, զաղաչանս մեր բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնին անարատ ծնողի միածնի Որդւոյ քո· եւ աղաչանօք ամենայն սրբոց քոց: Լո՛ւր մեզ Տէ՛ր, եւ ողորմեա՛· ներեա՛, քաւեա՛, եւ թո՛ղ զմեղս մեր: Արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Որդւոյ եւ ընդ Սրբոյ Հոգւոյդ· այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից· Ամէն:*

Եւ դառնալով առ ժողովուրդն, շարունակէ ասել·

*Խոստովանիմ առաջի Աստուծոյ եւ սրբուհւոյ Աստուածածնին· եւ առաջի ամենայն Սրբոց· եւ առաջի ձեր հա՛րք եւ եղբա՛րք· զամենայն մեղս զորս գործեալ եմ· քանզի մեղայ խորհրդով բանիւ եւ գործով· եւ ամենայն մեղօք զոր գործեն մարդիկ: Մեղա՛յ, մեղա՛յ, աղաչեմ զձեզ, խնդրեցէ՛ք վասն իմ յԱստուծոյ զթողութիւն:*

Մի ոմն 'ի մերձակայ քահանայից պատասխանեսցէ·

*Ողորմեսցի քեզ Աստուած հզօրն եւ թողութիւն շնորհեսցէ ամենայն յանցանաց քոց, անցելոյն եւ այժմուս եւ յառաջակայէն փրկեսցէ եւ հաստատեսցէ՛ յամենայն գործս բարիս· եւ հանգուսցէ զքեզ 'ի հանդերձեալ կեանսն· Ամէն:*

Պատասխանեսցէ եւ ինքն·

*Ազատեսցէ՛ եւ զձեզ մարդասէրն Աստուած, եւ թողցէ՛ զամենայն յանցանս ձեր· տացէ ժամանակ ապաշխարելոյ եւ գործելոյ զբարիս· ուղղեսցէ եւ զառաջակայ կեանս ձեր շնորհօք Սուրբ Հոգւոյն, հզօրն եւ ողորմածն եւ նմա փառք յաւիտեանս· Ամէն:*

**Priest.** Receive, O Lord, our supplications through the intercession of the Holy Mother of God, the Immaculate Mother of Thine only begotten Son, and through the entreaties of all Thy saints. Hear us, O Lord, and have mercy, forgive, expiate, and remit our sins, and make us worthy, with praise to glorify Thee, with Thy Son, and the Holy Ghost; now and ever, world without end. Amen.

Then, turning towards the congregation, he says:

I confess before God, and the Holy Mother of God, and before all the Saints, and before you, fathers and brethren, and all the sins I have committed. For I have sinned in thought, word and deed, and with every sin committed by men; I have sinned, sinned, I pray ye, entreat God for me to grant forgiveness.

One of the priests shall answer:

May God Almighty have mercy on thee, and grant forgiveness of all thy trespasses, past and present; and may He deliver thee from those that are to come; confirm thee in every good work, and give thee rest in life everlasting. Amen.

To which the priest replies:

May God who loves men, save you also and forgive you your trespasses; give you time for repentance, and for the practice of good works; and may He be pleased to direct your future life, through the grace of the Holy Ghost, who is both mighty and merciful; and unto whom be glory for ever. Amen.

ԴՊԻՐՔ ԵՒ ԺՈՂ· Յիշեսջի՛ր եւ զմեզ առաջի անմահ Գառին Աստուծոյ:

ՔԱՀԱՆԱՅՆ· Յիշեալ լիջի՛ք առաջի անմահ Գառին Աստուծոյ:

Դպիրքն, Սաղմոս ՂԹ· փոխ·

Աղաղակեցէ՛ք առ Տէր ամենայն երկիր· ծառայեցէ՛ք Տեառն ուրախութեամբ:

Մտէ՛ք առաջի նորա ցնծութեամբ· ծաներուք զի նա է Տէր Աստուած մեր:

Նա արար զմեզ, եւ ոչ մեք էաք· մեք ժողովուրդք եւ խաշն արօտի նորա:

Մտէ՛ք ընդ դրունս նորա խոստովանութեամբ· եւ օրհնութեամբ 'ի յարկս նորա:

Խոստովան եղերո՛ւք Տեառն, եւ օրհնեցէ՛ք զանուն նորա:

Քաղցր է Տէր· յաւիտեան է ողորմութիւն նորա, յազգէ մինչեւ յազգ է ճշմարտութիւն նորա:

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ:

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից· Ամէն:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Սուրբ եկեղեցեաւս աղաչեսցուք զՏէր· զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց եւ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ: Ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո՛ եւ ողորմեա՛:

**Choir and pecple·** Remember us before the immortal Lamb of God.

**Priest·** You shall be remembered in presence of the immortal Lamb of God.

The **Choir** then chants Psalm C in antiphon.

Make a joyful noise unto the Lord, all ye lands: serve the Lord with gladness;

Come before His presence with singing; know ye that the Lord He is God.

It is He that hath made us, and not we ourselves; we are His people, and the sheep of His pasture.

Enter into His gates with thanksgiving, and into His courts with praise.

Give thanks unto Him, and bless His name.

For the Lord is good; His mercy is everlasting; and His truth endureth to all generations.

Glory be to the Father, and to the Son, and to the Holy Ghost.

Now and ever, world without end. Amen.

**Deacon·** With the Holy Church let us beseech the Lord, that through her He may deliver us from our sins, and save us through the grace of His mercy. O our Lord God Almighty, save and have mercy.

ՔԱՀԱՆԱՅՆ· Ի մէջ տաճարիս եւ առաջի Աստուածընկալ եւ պայծառացեալ սուրբ նշանացս եւ սուրբ տեղւոյս խոնարհեալ երկիւղիւ երկրպագանեմք· զսուրբ եւ զհրաշալի եւ զյաղթող զՅարութիւնդ քո փառաւորեմք· եւ քեզ մատուցանեմք զօրհնութիւն եւ զփառս ընդ Հօր եւ ընդ Հոգւոյդ սրբոյ· այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից· Ամէն:

ՔԱՀԱՆԱՅՆ ասասցէ Սաղմոս ԽԲ· կցորդ: Եւ ելցէ 'ի խորանն

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած, որ ուրախ առնէ զմանկութիւն իմ:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Դա՛տ արա ինձ Աստուած· եւ իրաւ արա ինձ 'ի դատաստանի իմում:

Յազգէ՛ որ ո՛չ է սուրբ· 'ի մարդոյ մեղաւորէ նենգաւորէ փրկեա՛ զիս:

Դու Աստուած հզօրիչ իմ ես· ընդէ՛ր մոռացար զիս· ընդէ՛ր տրտում գնամ ես 'ի նեղել թշնամւոյ իմոյ:

Առաքեա, Տէ՛ր, զլոյս քո եւ զճշմարտութիւն քո· զի առաջնորդեսցեն ինձ եւ հանցեն զիս 'ի լեառն սուրբ եւ 'ի յարկս քո:

Մտից առաջի սեղանոյ Աստուծոյ առ Աստուած՝ որ ուրախ առնէ զմանկութիւն իմ:

Խոստովան եղէց քեզ օրհնութեամբ, Աստուած Աստուած իմ:

**Priest.** In the midst of this temple, and in the presence of these God-accepted and glorified Holy Tokens and of this holy place, we humbly worship with fear. We glorify Thy holy, marvellous, and triumphant Resurrection. And unto Thee we offer praise and glory, with the Father, and the Holy Ghost, now and ever, world without end, Amen.

The **Priest** saying Psalm XLIII, in antiphon with the deacon goes up to the Altar.

I will go unto the altar of God; unto God who made my infancy happy.

**Deacon.** Judge me, O God, and plead my cause against an ungodly nation.

O deliver me from the deceitful and unjust man.

For thou art the God of my strength; why hast thou cast me off? Why go I mourning because of the oppression of the enemy ?

O send out Thy light and Thy truth; let them lead me: Let them bring me unto Thy holy hill, and to Thy tabernacles.

Then will I go unto the altar of God, unto God who made my infancy happy.

And will praise Thee with thanksgiving, O God, my God.

Արդ՝ ընդէ՞ր տրտում ես անձն իմ · կամ ընդէ՞ր խռովես զիս · յուսա՛ առ Աստուած, խոստովանեա՛ նմա · փրկիչ երեսաց իմոց Աստուած է:

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ ·

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից · Ամէն:

ՍԱՐԿԱՒԱԳՆ · Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք · Օրհնեսցուք զՀայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որ արժանի արար զմեզ կալ 'ի տեղւոջս փառաբանութեան, եւ երգել զերգս հոգեւորս: Ամենակալ Տէր Աստուած մեր · կեցո՛ եւ ողորմեա՛ :

ՔԱՀԱՆԱՅՆ · 'Ի յարկի սրբութեան եւ 'ի տեղւոջս փառաբանութեան · հրեշտակաց բնակարանիս եւ մարդկան քաւարանիս · առաջի աստուածընկալ եւ պայծառացեալ սուրբ նշանացս եւ սուրբ սեղանոյս խոնարհեալ երկիրպագանեմք · զսուրբ եւ զհրաշալի եւ զյաղթող զՅարութիւն քո օրհնեմք եւ փառաւորեմք · եւ քեզ ընդ երկնային զօրսն մատուցանեմք զօրհնութիւն եւ զփառս ընդ Հօր եւ ընդ Հոգւոյդ Սրբոյ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից · Ամէն:

Յետ այսր աղօթից ծածկի Սեղանն վարագուրաւ, եւ մնայ մինչեւ ցաւարտ ընծայիցն դնելոյ ·
Եւ Դպիրքն երգեն զմեղեդի ըստ պատշաճի աւուրն, կամ զշարականն խնկարկութեան ·

ՅԱՅՍ ՅԱՐԿ նուիրանաց ուխտի Տեառն տաճարիս, ժողովեալքս աստանօր 'ի խորհուրդ պաշտաման պաղատանաց առաջիկայ սուրբ Պատարագիս ·

Why art thou cast down, O my soul? And why art thou disquieted within me? Hope in God: for I shall yet praise him, who is the health of my countenance, and my God.

Glory be to the Father, and to the Son, and to the Holy Ghost.

Now and ever, world without end. Amen.

**Deacon.** Let us again beseech the Lord for peace. Let us bless the Father of our Lord Jesus Christ, who has counted us worthy to stand in this place of praise, and to sing spiritual songs; Almigthy Lord our God, save and have mercy.

**Priest.** In this abode of holiness, and in the place of praise, in this dwelling of angels and of expiatory for men, bowing down in fear we worship in the presence of these glorious and divine tokens and of the Holy Table, and we glorify Thy wonderful and triumphant Resurrection. And unto Thee with the heavenly host we give praise and glory with the Father and the Holy Ghost, now and ever, world without and. Amen.

(After these prayers the curtain is drawn, and remains so during the whole prothesis).

**Then the Choir sings the melody appointed for the day, or else the following which is the hymn of censing.**

**IN** this shrine of devotional offerings in the Lord's temple, we, assembled together for the mystery of worship and supplications before the Holy Sacrifice, wave up

*խնկօք անուշիւք խումբ առեալ պարեմք 'ի վերնայարկ սրահս խորանիս: Ուղղութեամբ ընկա՛լ զաղօթս մեր որպէս բուրումն անուշահոտ խնկոց ստաշխից եւ կինամոնաց․ եւ զմատուցողս պահեա՛ սրբութեամբ միշտ եւ հանապազ քեզ սպասաւորել: Բարեխօսութեամբ Մօր քո եւ Կուսի․ ընկա՛լ զաղաչանս քոց պաշտօնէից:*

*Որ գերագոյն քան զերկինս պայծառացուցեր սուրբ զԵկեղեցի արեամբ քով Քրիստոս․ եւ ըստ երկնայնոցն կարգեցեր 'ի սմա զդասս Առաքելոց եւ Մարգարէից սուրբ Վարդապետաց․ այսօր ժողովեալ դասք քահանայից, սարկաւագաց, դպրաց եւ կղերիկոսաց․ խունկ մատուցանեմք առաջի քո Տէ՛ր, յօրինակ ըստ հնումն Զաքարիա: Ընկա՛լ առ 'ի մէնջ զխընկանուէր մաղթանս, որպէս զպատարագն Աբէլի, զՆոյի եւ զԱբրահամու: Բարեխօսութեամբ վերին քո զօրացդ, միշտ անշարժ պահեա՛ զաթոռ Հայկազնեայս:*

*Խնդա՛ յոյժ դուստր լուսոյ Մայր Սուրբ Կաթուղիկէ մանկամբք քո Սիոն․ զարդարեալ պճնեա՛ հարսն պանծալի երկնանման լուսաճեմ խորան․ զի օծեալն Աստուած էնն 'ի յէնն անծախապէս 'ի քեզ միշտ պատարագի․ Հօր 'ի հաշտութիւն մեզ 'ի քաւութիւն բաշխէ զմարմին եւ զարիւն իւր սուրբ․ վասն իւր կատարման սուրբ տնօրէնութեան շնորհէ զթողութիւն կանգնողի տաճարիս:*

*Զանապական Կոյսն Մարիամ Աստուածածին խոստովանի սուրբ Եկեղեցի․ ուստի առեալ հացն անմահութեան եւ բաժակ մեզ ուրախարար․ տո՛ւք օրհնութիւն Նմա հոգեւոր երգով:*

aloft a mixture of sweet spices. Favourably receive our prayers as the savour of sweet-smelling incense, myrrh, and cinnamon. Keep firm in holiness to serve Thee, now and ever those who offer in to Thee. Through the intercession of Thy Virgin Mother, accept the supplications of those who worship Thee.

O Christ, who with Thy Blood hast made Thy Church brighter than the heavens, and hast appointed within her, after the pattern of heavenly hosts, orders of Apostles, Prophets, and holy Teachers, we priests, deacons, readers, and clergy here assembled this day, burn incense before Thee, as Zachariah did of old. Accept from us our prayers sent up to Thee as incense, like the sacrifice of Abel, of Noah, and of Abraham. Through the intercession of Thy heavenly hosts maintain ever unshaken the throne of Armenia.

Rejoice greatly, O Zion, daughter of light, Holy Mother, Catholic, with thy children. Fair Spouse, adorned and embellished like a light-heaven for the Anointed God. Very God of Very God, is ever offered in Thee, a sacrifice without fire, who dispenses His own sacred Body and Blood, in reconciliation to the Father, and in atonement for us. Through His holy dispensation grant forgiveness to the builder of this temple.

The Holy Church confesses the immaculate Virgin Mary, Mother of God, for that she gave us the bread of immortality and the cup of rejoicing. Give her blessings in spiritual songs.

Եւ ՍԱՐԿԱՒԱԳՆ 'ի մէջ եկեղեցւոյն կալով ձայնեսցէ.

*Օրհնեա՛ Տէ՛ր:*

Եւ ՔԱՀԱՆԱՅՆ 'ի ձայն ասասցէ.

*ՕՐՀՆԵԱԼ թագաւորութիւնն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

Եւ սկսանին ԴՊԻՐՔՆ ժամամուտ ըստ պատշաճի աւուրն, կամ այս.

*Միածին Որդի եւ Բանդ Աստուած եւ անմահ էութիւն, որ յանձն առեր մարմնանալ 'ի Սրբուհւոյ Աստուածածնէն եւ 'ի միշտ Կուսէն. անփոփոխելիդ մարդ եղեալ խաչեցար Քրիստոս Աստուած մեր. մահուամբ զմահ կոխեցեր. մինդ 'ի Սրբոյ Երրորդութենէն՝ փառաւորակից ընդ Հօր եւ Սրբոյ Հոգւոյն. կեցո՛ զմեզ:*

'Ի Զատկին

*Քրիստոս յարեա՛ւ 'ի մեռելոց. մահուամբ զմահ կոխեաց եւ յարութեամբն իւրով մեզ զկեանս պարգեւեաց. նմա փառք յաւիտեանս. Ամէն:*

Եւ յաւարտիլն՝ ձայնեսցէ ՍԱՐԿԱՒԱԳՆ.

*Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք. ընկա՛լ կեցո՛ եւ ողորմեա՛:*

*Օրհնեա՛ Տէ՛ր:*

Then the **Deacon** standing in the middle of the church, calls aloud:

Master, give the blessing.

The **Priest** answers with a loud voice:

**BLESSED** be the Kingdom of the Father, and of the Son, and of the Holy Ghost, now and for ever, world without end. Amen.

Then the **Choir** chants the proper Introit for the feast, or the following one:

O Thou only Begotten Son and Word God, and immortal Being, who didst consent to incarnate through the Holy Mother of God and Ever-Virgin. O Christ our God, who though immutable, didst really become man, and wast crucified, who didst conquer death by death; O Thou, one of the Holy Trinity, co-equal in glory with the Father and with the Holy Ghost, save us.

**For Easter**

Christ is risen from the dead !

He has trampled down death by death and granted us life through His Resurrection. Glory be to Him for ever. Amen.

**When ended the DEACON proclaims:**

Let us again beseech the Lord for peace. Receive, save and have mercy.

Master, give the blessing.

*ՔԱՀԱՆԱՅՆ. Օրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

*Խաղաղութիւն ✠ ամենեցուն:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Եւ ընդ հոգւոյդ քում:*
*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Աստուծոյ երկիրպագեսցուք:*
*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Առաջի քո Տէր:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Տէր Աստուած մեր, որոյ կարողութիւնդ անքնին է. եւ փառքդ անհասանելի: Որոյ ողորմութիւնդ անչափ է, եւ գթութիւնդ անբաւ: Դու ըստ առատ մարդասիրութեանդ քում, նայեա՛ց ՚ի ժողովուրդս քո՛ եւ ՚ի տաճարս այս սուրբ: Եւ արա՛ ընդ մեզ եւ ընդ աղօթակիցս մեր. առատապէս զողորմութիւն քո եւ զգթութիւն: Զի քեզ վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

Եւ սկսանին աստ ԴՊԻՐՔՆ Սաղմոս եւ շարական
ըստ պատշաճի աւուրն, կամ այս.
Սաղմոս. Տէր թագաւորեաց: Շարական ԱՁ.

*ԶԹԱԳԱՒՈՐՆ փառաց Քրիստոս. որ վասն մեր մարմնացաւ ՚ի սուրբ Կուսէն եւ խաչի համբերելով. միաբանութեամբ երգով բարեբանեսցուք: — Որ զԹաղումն երեքօրեայ յանձն էառ յարուցեալ ՚ի մեռելոց իշխանութեամբ. միաբանութեամբ երգով բարեբանեսցուք: — Կարողապէս զդրունս դժոխոց խորտակեաց. Եկեղեցւոյ իւրում զգեցոյց զմեծ վայելչութիւն. միաբանութեամբ երգով բարեբանեսցուք:*

**Priest·** Blessing and glory to the Father, and to the Son, and to the Holy Ghost, now and for ever world without end. Amen.

Peace ✠ be to all.

**Choir and people·** And with Thy Spirit.

**Deacon·** Let us worship God.

**Choir and people·** In Thy presence, O Lord.

**Priest·** **O LORD,** our God, whose power is unsearchable, and whose glory is incomprehensible; whose mercy is infinite, and whose clemency is boundless; in Thy generous compassion look down upon Thy congregation, and upon this holy temple; and abundantly show Thy mercy and pity on us, and on those who pray with us. For unto Thee belong glory, dominion, and honour, now and for ever, world without end. Amen.

Then the **Choir** begins the Psalm and Hymn appointed for the day or the following one.

Psalm (XCIII, 1-5.) The Lord reigneth.

### Hymn

**LET US PRAISE,** with a unanimous song. Christ the King of glory, who for our sake was incarnate of the Holy Virgin, and endured sufferings upon the Cross.

Let us praise, with a unanimous song. Him who consented to be in the grave for three days, and rose from death in might.

Let us praise, with a unanimous song, Him who migthily bursted the doors of hell, and has clothed His Church with Divine Majesty.

'Ի Զատկին

Սաղմ· ճխէ· 12–22 «Գովեա՛ Երուսաղէմ զՏէր»։

*ՅԱՐԵԱՒ ՔՐԻՍՏՈՍ 'ի մեռելոց, Ալէլուիա։*
*Եկայք ժողովուրդք, երգեցէք Տեառն. Ալէլուիա։*
*Յարուցելոյն 'ի մեռելոց· Ալէլուիա·*
*Որ զաշխարհս լուսաւորեաց· Ալէլուիա։*

Եւ 'ի փառս տալն Դպրաց, երկիրպագցեն առաջի բեմին ամենեքեան։ Եւ Քահանայն դարձեալ խաչակնքէ ժողովուրդն եւ ապա երկիրպագանելով Սեղանոյն ասասցէ զաղօթս 'ի ծածուկ։

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէր։*

*ՔԱՀԱՆԱՅՆ· Զի քո է կարողութիւն եւ զօրութիւն, եւ փառք յաւիտեանս· Ամէն։*

Եւ համբուրեսցեն զՍեղանն եւ Սարկաւագունքն գոչեսցեն·

*Պրօսխո՛ւմէ։*

Եւ 'ի Սարկաւագաց մի ոմն բարձրացուցանէ զԱւետարանն սուրբ. Եւ Դպիրքն ըստ խորհրդոյ աւուրն երգեն զԵրեքսրբեանն.

Յաւուրն Աւետեաց, Ծննդեան եւ Թլփատութեան.

*Սուրբ Աստուած, Սուրբ եւ հզօր, Սուրբ եւ Անմահ, որ ծնար եւ յայտնեցար վասն մեր· Ողորմեա՛ մեզ։* (Երիցս կրկնեա)։

Քառասնօրեայ գալստեան Քրիստոսի և Ծաղկազարդի

*Սուրբ Աստուած... որ եկիր եւ գալոց ես· Ողորմեա՛ մեզ։*

Զատկի եւ ամենայն Յարութեան Կիւրակէից·

*Սուրբ Աստուած... որ յարեար 'ի մեռելոց· Ողորմեա՛ մեզ։*

**For Easter**

**Hymn**

Psalm CXLVII, 12—20 "Praise the Lord O Jerusalem"

**CHRIST IS RISEN** from the death. Alleluia.
Come, O ye people, sing to the Lord. Alleluia.
To Him, who is risen from the dead. Alleluia.
To Him, who has given light to the world. Alleluia.

Then while the CHOIR sings, the Priest turning towards the people makes the sign of the cross and bowing to the Holy Table, says prayer privately.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** For Thine is the power, the dominion, and the glory, for ever and for ever. Amen.

Then they kiss the Holy Table, and the **Deacon** proclaim:

Proschume **(let us attend)**

Then one of the **Deacons** raises up the Holy Gospel, and the **Choir** meanwhile sings the proper Trisagion for the feast.

**On the days of the Annunciation, Christmas and Circumcision.**

Holy God, Holy and Strong, Holy and Immortal, who wast born and manifested for us, have mercy upon us. **(Thrice repeated).**

**On the Purification, and Palm Sunday.**

Holy God..... Who didst come and Who art to come, have mercy upon us.

**On Easter, and on other Sundays.**

Holy God..... Who didst rise from the death, have mercy upon us.

Համբարձմանն Քրիստոսի·

*Սուրբ Աստուած... որ համբարձար փառօք առ Հայր· Ողորմեա՛ մեզ:*

Հոգւոյ Գալստեանն·

*Սուրբ Աստուած... որ առաքեցար զՀոգին Սուրբ 'ի բարձանց յԱռաքեալսն· Ողորմեա՛ մեզ:*

Պայծառակերպութեանն Քրիստոսի

*Սուրբ Աստուած... որ յայտնեցար 'ի Թափոր լերինն· Ողորմեա՛ մեզ:*

Վերափոխման Սուրբ Աստուածածնի·

*Սուրբ Աստուած... որ եկիր 'ի փոխումն Մօր քո եւ Կուսի· Ողորմեա՛ մեզ:*

Խաչի

*Սուրբ Աստուած... որ խաչեցար վասն մեր· Ողորմեա՛ մեզ:*

Եւ 'ի կատարիլն Երեքսրբենոյն՝ Սարկաւագն քարոզէ·

*Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի եւ հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ· զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Վասն ամենայն սուրբ եւ ուղղափառ Եպիսկոպոսաց· զՏէր աղաչեսցուք:*

**On Ascension.**

Holy God..... Who didst ascend with glory to the Father, have mercy upon us.

**On Pentecost.**

Holy God..... Who hast sent Thy Holy Ghost from above to the Apostles, have mercy upon us.

**On the Transfiguration.**

Holy God..... Who wast revealed on the mountan of Tabor, have mercy upon us.

**On the Assumption of the Mother of God.**

Holy God..... Who didst come to transfer Thy Virgin Mother, have mercy upon us.

**On the Holy Cross.**

Holy God..... Who wast crucified for us, have mercy upon us.

When the Trisagion is ended, the **Deacon** then proclaims aloud:

Let us again beseech the Lord for peace.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** For the peace of the whole world and for the stability of our holy Church, let us beseech the Lord.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** For all the Holy and Orthodox Bishops, let us beseech the Lord.

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Վասն Հայրապետին մերոյ Տեառն* (այս անուն) *կենաց եւ փրկութեան հոգւոյ նորին· զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Վասն Վարդապետաց, քահանայից, սարկաւագաց, դպրաց եւ ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ· զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Վասն բարեպաշտ Թագաւորաց եւ աստուածասէր Իշխանաց, Զօրավարաց եւ զօրաց նոցին· զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Վասն հոգւոցն հանգուցելոց որք ճշմարիտ եւ ուղիղ հաւատով 'ի Քրիստոս ննջեցին· զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛ :*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Եւ եւս միաբան վասն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ· զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Զանձինս մեր եւ զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Քեզ Տեառնդ յանձն եղիցուք:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում· ասասցուք ամենեքեան միաբանութեամբ:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛· Տէ՛ր ողորմեա՛· Տէ՛ր ողորմեա՛ :*

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** For the long life of our Supreme Patriarch Lord (N), and for the salvation of his soul let us beseech the Lord.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** For the Vartabeds, Priests, Deacons, Choristers, and for every rank of the children of the Church let us beseech the Lord.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** For pious Kings and God-loving princes, for their generals and their armies let us beseech the Lord.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** For the souls of those who rest in death, who have fallen asleep in Christ in the true and orthodox faith let us beseech the Lord.

**Choir and people.** Lord, remember and have mercy.

**Deacon·** For our true and holy faith let us also unanimously beseech the Lord.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** Let us commit ourselves and one another unto the Lord The Almighty God.

**Choir and People·** Unto Thee, O Lord, let us be committed.

**Deacon·** Have mercy upon us, O Lord our God, according to Thy great mercy. Let us all say with one accord.

**Choir and people·** Lord, have mercy, Lord, have mercy, Lord, have mercy.

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէր:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Զի ողորմած եւ մարդասէր ես Աստուած գոլով, եւ Քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

Եւ ընթերցցին զգիրս մարգարէականս եւ առաքելականս: Եւ զկնի ալէլուիա. ըստ ցուցանելոյ ընթերցուածոյն, եւ յաւարտմանն:

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Ալէլուիա Օ՛րթի:*

ՔԱՀԱՆԱՅՆ դարձցի եւ խաչակնքեսցէ 'ի վերայ ժողովրդեան ասելով.

*Խաղաղութիւն ✠ ամենեցուն:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Եւ ընդ հոգւոյդ քում:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Երկիւղածութեամբ լուարուք:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մատթէոսի (Մարկոսի, Ղուկասու, Յովհաննու):*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Փա՛ռք քեզ Տէր Աստուած մեր:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Պրօսխումէ:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Ասէ Աստուած:*

Եւ ՍԱՐԿԱՒԱԳՆ ընթերցցի զԱւետարանն սուրբ, եւ յաւարտմանն ասասցեն ամենեքեան.

*Փա՛ռք Քեզ Տէր Աստուած մեր:*

**Deacon·** Master, give the blessing.

**Priest·** For, O God, Thou art merciful, and Thou lovest men, and unto Thee belong glory, dominion. and honour, now and ever, world without end. Amen.

Then one of the readers shall read the books of the Prophets, according to the day and after "The Alleluia", according to the direction for it in the lesson, and at the end of it all.

**Deacon·** Alleluia Orthi (stand up)

Then the PRIEST turns towards the people and makes the sign of Cross over the congregation, saying:

Peace ✠ be to all.

**Choir and people·** And with Thy Spirit.

**Deacon·** Let us hearken with fear.

**Deacon·** The Holy Gospel of Jesus Christ, according to Matthew (Mark, Luke, John).

**Choir and people·** Glory be to Thee, O Lord our God.

**Deacon·** Proschume (let us attend.)

**Choir and people·** God speaks.

Then the **Deacon** shall read the Holy Gospel, at the end of which he shall say

Glory be to Thee, O Lord, our God.

Եւ ապա ասեն զՆիկիական դաւանութիւնն 'ի լման ·

ՀԱՒԱՏԱՄՔ 'Ի ՄԻ ԱՍՏՈՒԱԾ ՀԱՅՐ Ամենակալ, յարարիչն երկնի եւ երկրի, երեւելեաց եւ աներեւութից: Եւ 'ի մի Տէր Յիսուս Քրիստոս յՈրդին Աստուծոյ, ծնեալն յԱստուծոյ Հօրէ՝ Միածին, այսինքն յէութենէ Հօր: Աստուած՝ յԱստուծոյ, Լոյս 'ի Լուսոյ, Աստուած ճշմարիտ՝ յԱստուծոյ ճշմարտէ, ծնունդ եւ ո՛չ արարած: Նոյն ինքն 'ի բնութենէ Հօր որով ամենայն ինչ եղեւ յերկինս եւ 'ի վերայ երկրի, երեւելիք եւ աներեւոյթք: Որ յաղագս մեր մարդկան եւ վասն մերոյ փրկութեան իջեալ 'ի յերկնից մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս 'ի Մարիամայ սրբոյ կուսէն Հոգւովն Սրբով: Որով էառ մարմին, Հոգի եւ միտ. եւ զամենայն որ ինչ է 'ի մարդ, ճշմարտապէս եւ ոչ կարծեօք: Չարչարեալ, խաչեալ, թաղեալ, յերրորդ աւուր յարուցեալ. ելեալ 'ի յերկինս նովին մարմնով նստաւ ընդ աջմէ Հօր: Գալոց է նովին մարմնովն եւ փառօք Հօր, 'ի դատել զկենդանիս եւ զմեռեալս. Որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան:

Հաւատամք եւ 'ի Սուրբ Հոգին յանեղն եւ 'ի կատարեալն: Որ խօսեցաւ յՕրէնս եւ 'ի Մարգարէս եւ յԱւետարանս: Որ էջն 'ի Յորդանան, քարոզեաց յԱռաքեալսն եւ բնակեցաւ 'ի Սուրբսն:

Then shall the Nicene Creed be said in full.

**WE BELIEVE IN ONE GOD,** the Father Almighty, Maker of Heaven and Earth, of things visible and invisible. And in one Lord Jesus Christ, the Son of God, begotten of God the Father, that is, Only-Begotten Son of the essence of the Father, God of God, Light of Light, very God of very God; begotten not made. Himself of the nature of the Father, by whom all things came into existence in Heaven and upon earth, both visible and invisible. Who, for us men, and for our salvation, having come down from Heaven, was incarnate, became man, was born perfectly of the Holy Virgin Mary by the Holy Ghost. Of whom He took body, soul and mind and everything that is in man, verily and not in semblance. He suffered, was crucifiied, was buried, having risen the third day, ascending into heaven in the same body, He sat at the right hand of the Father. He is to come in the same body and in the glory of the Father, to judge the quick and the dead; of whose Kingdom there is no end.

We also believe in the Holy Ghost, uncreated and perfect, who spake in the Law, and in the Prophets, and in the Gospels. Who came down upon the Jordan, preached tnrough the Apostles and dwelt in the Saints.

*Հաւատամք եւ 'ի Մի միայն Ընդհանրական եւ Առաքելական Սուրբ Եկեղեցի: 'Ի մի մկրտութիւն, յապաշխարութիւն, 'ի քաւութիւն եւ 'ի թողութիւն մեղաց: 'Ի յարութիւն մեռելոց, 'ի դատաստանն յաւիտենից հոգւոց եւ մարմնոց, յարքայութիւնն երկնից եւ 'ի կեանսն յաւիտենականս:*

*Իսկ որք ասենն· էր երբեմն, յորժամ ոչ էր Որդին· կամ էր երբեմն, յորժամ ոչ էր Սուրբ Հոգին· կամ թէ յոչէից եղեն, կամ յայլմէ էութենէ ասեն լինել զՈրդին Աստուծոյ եւ կամ զՍուրբ Հոգին, եւ թէ փոփոխելիք են կամ այլայլելիք, զայնպիսիսն մերժէ Կաթողիկէ եւ Առաքելական Սուրբ Եկեղեցի:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէ՛ր:*

*ՔԱՀԱՆԱՅՆ·* ('Ի Լուսաւորչէ մերմէ ասացեալ):

*Իսկ մեք փառաւորեսցուք որ յառաջ քան զյաւիտեանս երկիրպագանելով Սրբոյ Երրորդութեանն եւ միոյ Աստուածութեանն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ· այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից· Ամէն:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ* քարոզէ 'ի ձայն:

*Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛:*

We also believe in One only Universal and Apostolic Church; in one Baptism, in repentance, in the expiation and forgiveness of sins; in the Resurrection of the dead; in the everlasting judgment of souls and bodies, in the Kingdom of heaven; and in the life everlasting.

**BUT** those who say there was a time when the Son was not; or that there was a time when there was no Holy Ghost; or that they came into being of things that were not; or who say that the Son of God or the Holy Ghost be of a different essence, and that they be changeable and alterable, such doth the Holy Catholic and Apostolic Church reject and disown.

**Deacon·** Master, give the blessing.

**Priest** says (added by our St. Gregory the Illuminator)

**BUT** we glorify Him who was before all ages, adoring the Holy Trinity, and the One Godhead of the Father, and the Son, and the Holy Ghost, now and ever, world without end. Amen.

**Deacon·** Let us again beseech the Lord for peace.

**Choir and people·** Lord, have mercy.

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Եւ եւս հաւատով աղաչեսցուք եւ խնդրեսցուք 'ի Տեառնէ Աստուծոյ եւ 'ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ 'ի ժամուս պաշտաման եւ աղօթից: Զի արժանի ընդունելութեան արասցէ լուիցէ Տէր ձայնի աղաչանաց մերոց: Ընկալցի զխնդրուածս սրտից մերոց· թողցէ զյանցանս մեր ողորմեսցի 'ի վերայ մեր: Աղօթք մեր եւ խնդրուածք յամենայն ժամ· մտցեն առաջի մեծի Տէրութեան նորա: Եւ նա տացէ մեզ միաբան միով հաւատով եւ արդարութեամբ վաստակել 'ի գործս բարեաց: Զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ 'ի վերայ մեր Տէրն ամենակալ· կեցուսցէ եւ ողորմեսցի:*

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· *Կեցո՛ Տէր:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Զժամ սուրբ պատարագիս եւ զառաջիկայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով 'ի Տեառնէ խնդրեսցուք:*

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· *Շնորհեա՛ Տէր:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց· 'ի Տեառնէ խնդրեսցուք:*

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· *Շնորհեա՛ Տէր:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Զքաւութիւն եւ զթողութիւն յանցանաց մերոց· 'ի Տեառնէ խնդրեսցուք:*

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· *Շնորհեա՛ Տէր:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Զսրբոյ խաչին մեծ եւ կարող զօրութիւնն յօգնութիւն անձանց մերոց· 'ի Տեառնէ խնդրեսցուք:*

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· *Շնորհեա՛ Տէր:*

**Deacon.** Let us again beseech in faith, and request of the Lord, and of our Saviour Jesus Christ, at this hour of service and of prayer, that He will make worthy of acceptation, and that He, The Lord, will hearken to the voice of our supplications; that He will receive the requests of our hearts, forgive our trespasses, and have mercy upon us. May our prayers and requests at all times enter into the presence of His great Majesty, and may He grant us, united in one faith to labour in good works in righteousness, that the Lord Almighty may bestow on us the gifts of His mercy, and give us life and be merciful.

**Choir and people.** Save us, O Lord.

**Deacon.** Let us ask in faith of the Lord, that we may pass in peace this hour of the Holy Mass, and the present day.

**Choir and people.** Grant this, O Lord.

**Deacon.** Let us ask of the Lord an angel of peace to guard our persons.

**Choir and people.** Grant this, O Lord.

**Deacon.** Let us ask of the Lord the expiation and forgiveness of our sins.

**Choir and people.** Grant this, O Lord.

**Deacon.** Let us ask of the Lord the great and migthy strength of the Holy Cross, for the help of our persons.

**Choir and people.** Grant this, O Lord.

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Եւ եւս միաբան վասն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ զՏէր աղաչեսցուք:

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Զանձինս մեր եւ զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք:

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Քեզ Տեառնդ յանձն եղիցուք:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր՝ ըստ մեծի ողորմութեան քում· ասասցուք ամենեքեան միաբանութեամբ:

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛, Տէ՛ր ողորմեա՛, Տէ՛ր ողորմեա՛:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէ՛ր:

ՔԱՀԱՆԱՅՆ· Որպէս զի արժանաւորք եղիցուք գոհութեամբ փառաւորել զՔեզ ընդ Հօր եւ Սուրբ Հոգւոյդ· այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից· Ամէն:

Խաղաղութիւն ✠ ամենեցուն:

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Եւ ընդ հոգւոյդ քում:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Աստուծոյ երկիրպագեսցուք:

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Առաջի քո Տէր:

ՔԱՀԱՆԱՅՆ· Խաղաղութեամբ քով Քրիստոս Փրկիչ մեր՝ որ 'ի վե՛ր է քան զամենայն միտս եւ զբանս· ամրացո՛ զմեզ եւ աներկիւղ պահեա՛ յամենայն չարէ: Հաւասարեա՛ զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս քո՝ որք հոգւով եւ ճշմարտութեամբ քեզ երկիրպագանեն: Վասն զի ամենասուրբ Երրորդութեանդ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ· այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից·

Օրհնեա՛լ Տէր մեր Յիսուս Քրիստոս: Ամէն:

**Deacon·** Let us also unanimously beseech the Lord for our true and holy faith.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** Let us commit ourselves and one another unto the Lord the Almighty God.

**Choir and people·** Let us be committed unto Thee, O Lord.

**Deacon·** Have mercy upon us, O Lord our God, according to Thy great mercy. Let us all say together with one accord.

**Choir and people·** Lord, have mercy, Lord, have mercy, Lord, have mercy.

**Deacon·** Master, give the blessing.

**Priest·** That we may be made worthy to praise and glorify Thee with the Father and the Holy Ghost, now and ever, world without end. Amen.

Peace ✠ be to all.

**Choir and people·** And with Thy Spirit.

**Deacon·** Let us worship God.

**Choir and people·** In Thy presence, O Lord.

**Priest·** With Thy peace, O Christ our Saviour, which passeth all understanding and words, fortify us, and keep us fearless from all evil; Enroll us among fellowship with Thy true worshippers, who worship Thee in spirit and in truth; for unto the Most Holy Trinity belong glory, dominion and honour, now and ever, world without end.

Blessed be our Lord Jesus Christ. Amen.

*ՍԱՐԿԱՒԱԳՆ.* ձայնեսցէ. *Օրհնեա՛ Տէ՛ր։*

ՔԱՀԱՆԱՅՆ խաչակնքէ 'ի վերայ ժողովրդեանն ասելով 'ի ձայն

*Տէր Աստուած օրհնեսցէ ✠ զամենեսեանդ։*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Ամէն։*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Մի՛ ոք յերախայից. մի ոք 'ի թերահաւատից. եւ մի՛ ոք յապաշխարողաց, եւ յանմաքրից մերձեսցի յԱստուածային Խորհուրդս։*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Մարմի՛ն Տէրունական եւ Արիւն փրկչական կայ առաջի. երկնային զօրութիւնքն աներեւոյթս. երգեն եւ ասեն անհանգիստ բարբառով. Սուրբ, Սուրբ, Սուրբ, Տէր զօրութեանց։*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Սաղմոս ասացէք Տեառն Աստուծոյ մերոյ, դպիրք ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգեւորս։*

Դպիրքն ասեն զՍրբասացութիւնն ըստ խորհրդոյ աւուրն։
Եւ ամենեքեան խոնարհեսցին 'ի ծունկս։

## Սրբասացութիւնք

Յաւուրս Ծննդեան, Աւետեաց, Պայծառակերպութեան
եւ Աստուածածնի

*Բազմութիւնք հրեշտակաց եւ զօրաց երկնաւորաց. իջեալ 'ի յերկնից ընդ Միածին Թագաւորին։ Որք երգէին եւ ասէին. սա է՛ Որդին Աստուծոյ. ամենեքեան ասասցուք. ուրախ լերուք երկինք եւ ցնծասցեն հիմունք աշխարհի։ Զի Աստուածն յաւիտենական 'ի յերկրի երեւեցաւ եւ ընդ մարդկան շրջեցաւ. զի կեցուսցէ զանձինս մեր։*

**Deacon·** Master, give the blessing.

Then the **Priest** shall make the sign of the Cross over the congregation, saying:

The Lord God bless ✠ you all.

**Choir and people·** Amen.

**Deacon·** Let none of the catechuments, no man of feeble faith, none of the penitents, nor the unclean, draw nigh to this Divine Mystery.

**Choir and people·** The Body of the Lord, and the Blood of the Saviour are set forth. The celestial powers invisibly attending sing and say with the unceasing voice: Holy, Holy, Holy Lord of Hosts.

**Deacon·** Sing a psalm unto our Lord God, O ye choristers, a spiritual song with melody.

Then the Choristers shall sing the Trisagion according to the Celebration of the day, and all shall kneel.

**Trisagions.**

**For the Christmas, Annunciation, Transfiguration, and for the Feast of the Mother of God.**

Multitudes of angels and heavenly hosts have descended from Heaven with the King, the Only Begotten, who were singing and saying: This is the Son of God. Let us all say: Rejoince, O ye Heavens, and be joyful, O ye foundations of the earth. For the eternal God has appeared on earth, and has dwelt among men, to save our souls.

Ի Զատկէն ցհոգւոյ գալուստն եւ ի տօնս Ս. խաչի,

*Ո՛վ է որպէս Տէր Աստուած մեր. խաչեցաւ վասն մեր. թաղեցաւ. եւ յարեաւ հաւատարիմ եղեւ աշխարհի եւ համբարձաւ փառօք: Եկա՛յք ժողովուրդք. զօրհնութիւն ընդ հրեշտակս երգեսցուք նմա ասելով. Սո՛ւրբ. Սո՛ւրբ. Սո՛ւրբ ես Տէր Աստուած մեր:*

Յաւուրս Ծաղկազարդի, Հոգւոյ գալստեան, Եկեղեցւոյ,
Հրեշտակապետաց եւ այլ Կիւրակէից

*Հրեշտակային կարգաւորութեամբ լցեր Աստուած զքո սուրբ զԵկեղեցի: Հազարք հազարաց Հրեշտակապետք կան առաջի քո: Եւ բիւրք բիւրուց հրեշտակք պաշտեն զքեզ Տէր. եւ 'ի մարդկանէ հաճեցար ընդունիլ զօրհնութիւն: Զայնիւ խորհրդականաւ. Սո՛ւրբ, Սո՛ւրբ, Սո՛ւրբ Տէր զօրութեանց:*

Մինչ երգեն «զՄի՛ ոք յերախայիցն», Քահանայն հանցէ զսաղաւարտն եւ զփողաթափս, եւ խոնարհեսցի առաջի սրբոյ Սեղանոյն եւ խորհրդաբար աղօթեսցէ 'ի ծածուկ:

Եւ մինչ Քահանայն աղօթէ, Սարկաւագունքն
վերաբերիցեն սրբազան Հացն եւ անմահու-
թեան Բաժակն ի սուրբ Սեղանն:

Եւ գան յաստիճան խորանին, եւ բարձող ահաւոր
խորհրդոյն ասասցէ հանդարտութեամբ:

*Համբարձէ՛ք իշխանք զդրունս ձեր ի վեր. համբարձցին դրունք յաւիտենից եւ մտցէ Թագաւոր փառաց:*

Եւ պատարագիչն խնկարկէ եւ հարցանէ.

*Ո՞վ է սա Թագաւոր փառաց. Տէր հզօր զօրութեամբ իւրով. Տէր կարող 'ի պատերազմի:*

From Easter to Pentecost, and for the Feast of the Holy Cross.

Who is like our Lord God? Who for our sake was crucified, buried, and being risen, was recognized by the world, and ascended with glory. Come, O ye people, let us sing blessings to Him with the angels, saying: Holy, Holy, Holy art Thou, O Lord our God.

For Palm-Sunday, Pentecost, the Church, and the Feast of the Angels, and for other Sundays.

O God, Thou hast filled Thine Church with the angelic hierarchy. Thousands and thousands of archangels stand before Thee, and myriads of angels serve Thee, O Lord, yet Thou art pleased to accept blessings from men in a mystical song. Holy, Holy, Holy Lord of Hosts.

While the Deacon proclaims the "Let none of the catechumens", the **Priest** shall take off his Mitre and his slippers, and then humble himself before the Holy Table, and he shall thus pray mystically in silence.

**And while the Priest prays, the Deacons shall carry round the sacred bread and the cup of immortality, to the Holy Table.**

Then, coming to the steps of the Altar, the bearer of the Holy Mystery says attentively:

Lift up your gates, O ye princes; the everlasting doors shall be lifted up, and the King of Glory shall come in.

The Celebrant censes and asks:

Who is the King of Glory? The Lord strong in His power, the Lord mighty in battle.

*ՍԱՐԿԱՒԱԳՆ.* *Համբարձէ՛ք իշխանք զդրունս ձեր 'ի վեր. համբարձցին դրունք յաւիտենից եւ մտցէ Թագաւոր փառաց:*

*ՔԱՀԱՆԱՅՆ.* *Ո՞վ է սա Թագաւոր փառաց, Տէր զօրութեանց:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ.* *Սա՛ ինքն է Թագաւոր փառաց:*

Եւ պատարագողն երկրպագէ ահիւ եւ դողութեամբ եւ
առնու 'ի ձեռաց Սարկաւագին եւ խաչակնքէ
'ի վերայ ժողովրդեան ասելով.

*Օրհնեա՛լ եկեալ անուամբ Տեառն:*

Եւ ընծայքն վերաբերին 'ի Սեղանն եւ Քահանայն
խնկեսցէ եւ լուասցէ զմատունս իւր.
(Յարիցեն ամենեքեան 'ի խոնարհմանէ ծնկացն)

*ՍԱՐԿԱՒԱԳՆ.* *Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ.* *Տէ՛ր ողորմեա՛:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ.* *Եւ եւս հաւատով եւ սրբութեամբ կացցուք յաղօթս առաջի սրբոյ Սեղանոյս Աստուծոյ ահիւ: Մի՛ խղճիւ եւ գայթակղութեամբ. մի՛ նենգութեամբ. խորամանկութեամբ. մի՛ պատրանօք եւ խաբէութեամբ. մի՛ երկմտութեամբ եւ մի՛ թերահաւատութեամբ: Այլ ուղիղ վարուք. պարզ մտօք. միամիտ սրտիւ. կատարեալ հաւատով: Լցեալ սիրով լի եւ առաւելեալ ամենայն գործովք բարութեան: Կացցուք յաղօթս առաջի սրբոյ Սեղանոյս Աստուծոյ. եւ գտցուք զողորմութեան շնորհս: Յաւուր յայտնութեան եւ 'ի միւս անգամ գալստեան Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի. կեցուսցէ եւ ողորմեսցի:*

**Deacon.** Lift up your gates, O ye princes; the everlasting doors shall be lifted up and the King of Glory shall come in.

**Priest.** Who is the King of Glory? The Lord of hosts.

**Deacon.** He Himself is the King of Glory.

Then the Celebrant worships with fear and reverence and receives the Oblations from the hands of the Deacon; and then makes the sign of the Cross towards the congregation, saying:

Blessed is He that cometh in the name of the Lord.

The Oblations are then placed upon the Holy Table, and the Priest shall burn incense, and then wash his fingers. (Then all shall stand up).

**Deacon.** Let us again beseech the Lord for peace.

**Choir and people.** Lord, have mercy.

**Deacon.** Let us again in faith and purity stand in prayer with awe before the Holy Table of God. Not with scruple or offence; not with deceit or guile; not with wiles or deception; not with doubt, and not with feeble faith, but with an upright conduct, a pure mind, with a single heart, a perfect faith, being filled with love, full and overflowing with deeds of goodness; let us stand in prayer before the Holy Table of God, and there find the grace of mercy in the day of His appearing, and at the second coming of our Lord and Saviour Jesus Christ, may He give us life and be merciful.

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Կեցո՛ Տէր եւ ողորմեա՛:*
*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէր:*
*ՔԱՀԱՆԱՅՆ. Շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի. ընդ որում քեզ Հօր միանգամայն եւ Հոգւոյդ Սրբոյ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

*Խաղաղութիւն ✠ ամենեցուն:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Եւ ընդ հոգւոյդ քում:*
*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Աստուծոյ երկիրպագեսցուք:*
*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Առաջի քո Տէ՛ր:*
*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Ողջոյն տո՛ւք միմեանց 'ի համբոյր սրբութեան, եւ որք ոչ էք կարող հաղորդել Աստուածային խորհրդոյս, առ դրունս ելէ՛ք եւ աղօթեցէք:*
*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Քրիստոս 'ի մէջ մեր յայտնեցաւ. որ էնն Աստուած աստ բազմեցաւ: Խաղաղութեան ձայն հնչեցաւ. սուրբ ողջունիս հրաման տուաւ: Եկեղեցիս մի անձն եղեւ. համբոյրս յօդ լրման տուաւ: Թշնամութիւնն հեռացաւ. սէրն յընդհանուրս սփռեցաւ: Արդ պաշտօնեայք բարձեալ զձայն. տո՛ւք զօրհնութիւն 'ի մի բերան: Միասնական Աստուածութեանն. որում Սրովբէքն են սրբաբան:*

Եւ համբուրեսցեն զՍեղանն եւ զմիմեանս:
Ոմանք եւ զայս ասեն 'ի հանդիսի տօնի.

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Որք հաւատով կայք յանդիման, սուրբ Սեղանոյս արքայական: Տեսէք բազմեալ զՔրիստոս արքայն, եւ շուրջ պատեալ զօրք վերնական:*

**Choir and People·** Save, O Lord, and have mercy.

**Deacon·** Master, give the blessing.

**Priest·** Through the grace and love of our Lord and Saviour Jesus Christ, with whom unto Thee, O Father, and to the Holy Ghost, belong glory, dominion and honour, now and ever, world without end. Amen.

Peace ✠ be to all.

**Choir and people·** And with Thy Spirit.

**Deacon·** Let us worship God.

**Choir and people·** In Thy presence, O Lord.

**Deacon·** Salute one other with the kiss of holiness and those of you who are not able to partake of this divine mystery, go without the doors and pray.

**Choir and people·** Christ has been manifested among us; He that is God, has seated himself here; the voice of peace has been heard; the command for the holy greeting has been given; the Church has become one soul; the kiss is given as a crowning bond, enmity has been removed, and love has been spread abroad among us all. Now, O ye ministers, raise your voice and bless with one voice the united Trinity, unto whom Seraphim sing the hallowing song.

Then they kiss the Holy Table and one another.

On Festival days some add this:

**Deacon·** Ye who with faith stand before the Holy royal table. See the King Christ sitting, and surrounded with the celestial hosts.

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Վերհամբառնամք զաչս ունելով· եւ պաղատիմք զայս ասելով։ Զմեղս մեր մի՛ յիշեսցես· այլ գթութեամբ քո քաւեսցես։ Ընդ հրեշտակացն օրհնեմք զքեզ եւ ընդ սրբոց քոց Տէր փառք քեզ։

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Ահիւ կացցուք, երկիւղիւ կացցուք· բարւոք կացցուք եւ նայեցարուք զգուշութեամբ։

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Առ քեզ Աստուած։

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Պատարագ Քրիստոս մատչի գառն Աստուծոյ։

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Ողորմութիւն եւ խաղաղութիւն եւ պատարագ օրհնութեան։

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէ՛ր։

ՔԱՀԱՆԱՅՆ· Շնորհք, սէր եւ Աստուածային սրբարար զօրութիւնն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ։

Եղիցի ✠ ընդ ձեզ ընդ ամենեսեանդ։

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Ամէն եւ ընդ հոգւոյդ քում։

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Զդրունս, զդրունս· ամենայն իմաստութեամբ եւ զգուշութեամբ։ 'Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր աստուածային երկիւղիւ։

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Ունիմք առ քեզ Տէր ամենակալ։

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Եւ գոհացարուք զՏեառնէ բոլորով սրտիւ։

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Արժան եւ իրաւ։

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէ՛ր։

**Choir and people.** We look upwards with our eyes, and implore, saying: Remember not our sins, but in Thy compassion expiate them. With the angels we bless Thee, and with Thy Saints, Lord, we glorify Thee.

**Deacon.** Let us stand with awe, let us stand in dread, and let us stand with good behaviour, and let us look up attentively.

**Choir and People.** To Thee, O God.

**Deacon.** Christ, the Lamb of God, is offered in sacrifice.

**Choir and People.** Mercy and peace, and a blessed sacrifice.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** The grace, the love, and the divine sanctifying power of the Father, and of the Son, and of the Holy Ghost.

Be with you ✠ and with all.

**Choir and People.** Amen; and with Thy Spirit.

**Deacon.** Guard the doors, the doors, with all wisdom and caution, lift up your minds with divine fear.

**Choir and people.** We lift them up unto Thee, O Lord Almighty.

**Deacon.** And render thanks unto the Lord with whole heart.

**Choir and people.** It is meet and right.

**Deacon.** Master, give the blessing.

ՔԱՀԱՆԱՅՆ. Եւ ընդ Սերովբէսն եւ ընդ Քերովբէսն միաձայն սրբասացութեամբ յօրինել նուագս. եւ համարձակապէս գոչելով աղաղակել ընդ նոսին եւ ասել:

ԴՊԻՐՔՆ. Սո՛ւրբ. Սո՛ւրբ. Սո՛ւրբ. Տէր զօրութեանց: Լի են երկինք եւ երկիր փառօք քո. օրհնութիւն 'ի բարձունս, օրհնեալ որ եկիր եւ գալոց ես անուամբ Տեառն. Ովսաննա՛ 'ի բարձունս:

Մինչ նոքա երգեն, Քահանայն բազկատարած աղօթեսցէ 'ի ծածուկ:

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:

ՔԱՀԱՆԱՅՆ. Առէ՛ք, կերէ՛ք, ա՛յս է ՄԱՐՄԻՆ ԻՄ, որ վասն ձեր եւ բազմաց բաշխի՝ 'ի քաւութիւն եւ 'ի թողութիւն մեղաց:

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Ամէն:

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:

ՔԱՀԱՆԱՅՆ. Արբէք 'ի սմանէ ամենեքեան. այս է ԱՐԻՒՆ ԻՄ նորոյ ուխտի. որ յաղագս ձեր եւ բազմաց հեղանի 'ի քաւութիւն եւ 'ի թողութիւն մեղաց:

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Ամէն: Հայր երկնաւոր, որ զՈրդիդ քո ետուր վասն մեր՝ պարտապան պարտեաց մերոց. հեղմամբ Արեան Նորա աղաչեմք զքեզ, ողորմեա՛ քո բանաւոր հօտի:

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէր:

**Priest.** And with Seraphim and Cherubim to frame our songs with one voice of exalted praise and with boldness to shout and cry with them and say:

**Choir and people.** Holy, holy, holy Lord God of Hosts. Heaven and earth are full of Thy glory, blessing in the highest. Blessed art Thou who didst come, and who art to come, in the name of the Lord. Hosanna in the highest.

While they sing, the **Priest** shall privately say prayer,
with his arms spread out.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** Take, eat: This is MY BODY which is broken for you and for many, for the expiation and remission of sins.

**Choir and people.** Amen.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** Drink ye all of this: This is MY BLOOD of the New Testament, which is shed for you and for many, for the expiation and remission of sins.

**Choir and people.** Amen. Heavenly Father, who didst give Thine Only Begotten Son unto death for our sakes, as debtor of our debts, we beseech Thee, through the shedding of His blood, to have mercy on Thy rational flock.

**Deacon.** Master, give the blessing.

ՔԱՀԱՆԱՅՆ զԸնծայսն սակաւ ինչ բարձրացուցեալ, մատուցանէ առ Հայր, եւ դիցէ 'ի վերայ Սեղանոյն ասելով 'ի ձայն·

*Եւ զքոյս 'ի քոյոց քեզ մատուցանեմք, ըստ ամենայնի եւ յաղագս ամենեցուն:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Յամենայնի օրհնեալ ես, Տէ՛ր· օրհնեմք զքեզ, գովեմք զքեզ, գոհանամք զքէն, աղաչեմք զքեզ, Տէ՛ր Աստուած մեր:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէ՛ր:*

(Քահանայն դառնայ եւ խաչակնքէ ասելով 'ի ձայն)

*Խաղաղութիւն ✠ ամենեցուն:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Եւ ընդ հոգւոյդ քում:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Աստուծոյ երկիրպագեսցուք:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Առաջի քո Տէ՛ր: Որդի Աստուծոյ, որ պատարագեալ Հօր 'ի հաշտութիւն հաց կենաց բաշխես 'ի մեզ հեղմամբ Արեան քո սուրբ· աղաչեմք զքեզ ողորմեա՛ Արեամբ քով փրկեալ հօտի:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէ՛ր:*

*ՔԱՀԱՆԱՅՆ· Որպէս զի եղիցի սա ամենեցուն մեզ մերձեցելոցս, յանդատապարտութիւն, 'ի քաւութիւն եւ 'ի թողութիւն մեղաց:*

*ԴՊԻՐՔՆ· Հոգի Աստուծոյ, որ զփառակցի քո զխորհուրդ· իջեալ 'ի յերկնից կատարես 'ի ձեռս մեր· հեղմամբ Արեան Սորա աղաչեմք զքեզ, հանգո՛ զհոգիս մեր ննջեցելոցն:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէ՛ր:*

The Priest then raising the offerings a little, shall offer them unto the Father. And then he shall place them upon the Holy Table, saying:

And we offer unto Thee of Thine own, in all thngs, and for all things.

**Choir and people·** In everything Thou art blessed, O Lord. We praise Thee, we bless Thee, we give thanks unto Thee, and we pray to Thee, O Lord our God.

**Deacon·** Master, give the blessing.

The Priest, turning towards to the congregation and making the sign of the Cross, says:

Peace ✠ be to all.

**Choir and people·** And with Thy Spirit.

**Deacon·** Let us worship God.

**Choir and people·** In Thy presence. O Lord, Son of God, sacrificed for our reconciliation to the Father. Thou art being distributed among us for bread of life, through the shedding of Thine Holy Blood, we beseech Thee, have mercy on the flock saved by Thy Blood.

**Deacon·** Master, give the blessing.

**Priest·** So that this be to us all who partake of it, for release from condemnation, and for the expiation and remission of sins.

**Choir·** Spirit of God, who didst come down from heaven, dost operate by our hands the mystery of Thy coglorified through the shedding of His Blood, we beseech Thee, grant rest to the souls of our departed.

**Deacon·** Master, give the blessing.

*ՔԱՀԱՆԱՅՆ· Ընդ որս եւ մեզ այց արասցես բարերար Աստուած աղաչեմք:*

*ԴՊԻՐՔՆ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛:*

*ՔԱՀԱՆԱՅՆ· Աստուածածնին սրբոյ Կուսին Մարիամու, եւ Յովհաննու Մկրտչին, Ստեփաննոսի նախավկային, եւ ամենայն Սրբոց եղիցի յիշատակ ՚ի սուրբ պատարագս, աղաչեմք:*

*ԴՊԻՐՔՆ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛:*

ՍԱՐԿԱՒԱԳՆ յաջակողմն Սեղանոյն ձեռնամած ասասցէ·

*Առաքելոց սրբոց, Մարգարէից, Վարդապետաց, Մարտիրոսաց, եւ Հայրապետաց սրբոց, առաքելագործ Եպիսկոպոսաց, Երիցանց, ուղղափառ Սարկաւագաց, եւ ամենայն սրբոց: Եղիցի յիշատակ ՚ի սուրբ պատարագս՛ աղաչեմք:*

*ԴՊԻՐՔՆ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեալ, գովեալ եւ փառաւորեալ, հրաշալի եւ աստուածազարդ Յարութեանն Քրիստոսի երկրպագանեմք:*

*ԴՊԻՐՔՆ· Փա՛ռք յարութեան քո Տէր:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Առաջնորդացն մերոց եւ առաջին լուսաւորչացն սրբոց Թադէոսի եւ Բարդուղիմէոսի առաքելոցն, եւ Գրիգորի Լուսաւորչին, Արիստակիսի, Վրթանիսի, Յուսկանն, Գրիգորիսի, Ներսէսի, Սահակայ, Դանիէլի եւ Խադայ, Մեսրովբայ վարդապետին, եւ Գրիգորի Նարեկացւոյն, եւ Ներսէսի Կլայեցւոյն, Յովհաննու Որոտնեցւոյն, եւ Գրիգորի եւ Մովսէսի Տաթեւացեացն, եւ սրբոց Գրիգորիսեանց եւ Ներսիսեանց, Հովուաց եւ Հովուապետացն Հա—*

**Priest·** With whom, we also beseech Thee, beneficent God, to visit us.

**Choir·** Lord, remember and have mercy.

**Priest·** We beseech Thee also that in this holy oblation remembrance be made of the Mother of God, the Holy Virgin Mary; and of John the Baptist, of the proto-martyr Stephen, and of all the Saints.

**Choir·** Remember, O Lord, and have mercy upon them.

Then the **Deacon**, at the right hand of the Holy Table shall say, with clasped hands:

We beseech that in this sacred oblation remembrance be made of the Holy Apostles, Prophets, Vartabeds, Martyrs, and of all Holy Fathers, Apostolic Bishops, Presbyters, Orthodox Deacons, and of all the Saints.

**Choir·** Remember, O Lord, and have mercy upon them.

**Deacon·** Let us worship the blessed, revered and glorious, marvelous and divine Resurrecton of Christ.

**Choir·** Glory be to Thy Resurrection, O Lord.

**Deacon·** We beseech that in this Holy Sacrifice remembrance be made of our Prelates and our first illuminators, the holy Apostles Thaddeus and Bartholomew, of our illuminator Gregory, of the Saints Aristaces, Verthanes, Hussig, Gregoris, Nerses, Sahac, Daniel, and Khat, of the Vartabed Mesrob, and Gregory of Narek, of Nerses Clayetsi, John Worodnetsi, Gregory and Moses Dathevatsi, as of the saints Gregory and Moses, and of their disciples,

յաստանեայց: Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս՝ աղաչեմք:

ԴՊԻՐՔՆ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Միանձնացելոց սրբոց, առաքինասէր եւ աստուածուսոյց կրօնաւորացն, Պօղոսի, Անտոնի, Պօղայ, Մակարայ, Ոնոփրիոսի, աբբայ Մարկոսի, Սրապիոնի, Նեղոսի, Արսէնի, Եւագրի, Պարսամայ: Յովհաննիսեանց եւ Սիմէօնեանց, սրբոց Ոսկեանց եւ Սուքիասեանց, եւ ամենայն սրբոց, հարց եւ աշակերտելոց նոցին ընդ տիեզերս: Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս՝ աղաչեմք:

ԴՊԻՐՔՆ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Թագաւորաց հաւատացելոց սրբոց, Աբգարու, Կոստանդիանոսի, Տրդատայ, եւ Թէոդոսի, եւ ամենայն սուրբ եւ բարեպաշտ Թագաւորաց եւ աստուածասէր իշխանաց: Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս՝ աղաչեմք:

ԴՊԻՐՔՆ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Ընդհանուր ամենայն հաւատացելոց· արանց եւ կանանց· ծերոց եւ տղայոց· եւ ամենայն չափու հասակի հաւատով եւ սրբութեամբ 'ի Քրիստոս ննջեցելոց: Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս՝ աղաչեմք:

ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛:

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օրհնեա՛ Տէ՛ր:

ՔԱՀԱՆԱՅՆ· Եւս առաւել զԵպիսկոպոսապետն մեր եւ զպատուական Հայրապետն ամենայն Հայոց զՏէր (այս անուն) Կաթողիկոսն շնորհեսցես մեզ ընդ երկայն աւուրս ուղիղ վարդապետութեամբ:

and of all the Fathers and Primates of the Armenian church.

**Choir and People.** Remember them, O Lord, and have mercy upon them.

**Deacon.** We beseech that remembrance be made in this Holy Liturgy of the holy fathers Anchorites, and God-inspired monks, Paul, Anthony, Polus, Macarius, Onophrius, Mark the Abbot, Serapion, Nelus, Arsenius, Evagrius, Barsamas of the martyrs whose chiefs were Johns Simeons, Osghis, and Sukias; as well as of all the holy fathers, and of their disciples in the whole world.

**Choir and People.** Remember them, O Lord, and have mercy upon them.

**Deacon.** We beseech that remembrance be made in this holy Liturgy of the Christian Kings, Abgarus, Constantine, Tiridates, Theodosius, and of all the holy and pious sovereigns, and God-loving princes.

**Choir and People.** Remember them, O Lord, and have mercy upon them.

**Deacon.** We beseech that remembrance be made in this Holy Liturgy, of all the faithful, in general, men and women, old men and children, and of all every age who are fallen asleep in Christ in faith and holiness.

**Choir and People.** Remember them, O Lord, and have mercy upon them.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** And especially, grant us our Archbishop and venerable Patriarch of all Armenians (N.) for length of days in sound doctrine.

Եւ դարձեալ ՍԱՐԿԱՒԱԳՆ գայ 'ի տեղի իւր եւ ճարոզգէ բարձր.

Գոհութի՛ւն եւ փառաբանութիւն մատուցանեմք քեզ Տէր Աստուած մեր, վասն սուրբ եւ անմահ պատարագիս որ 'ի վերայ սրբոյ Սեղանոյս․ զի զսա՛ մեզ 'ի սրբութիւն կենդանութեան պարգեւեսցէ: Սովաւ շնորհեա՛ զսէր, զհաստատութիւն եւ զըղձալի զխաղաղութիւն ամենայն աշխարհի․ սրբոյ Եկեղեցւոյ եւ ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց․ եպիսկոպոսապետին մերոյ եւ պատուական Հայրապետին ամենայն Հայոց Տեառն (այս անուն)․ եւ քահանայիս որ զպատարագս մատուցանէ: Եւ վասն զօրութեանց եւ յաղթութեանց թագաւորաց Քրիստոնէից եւ իշխանացն բարեպաշտից: Աղաչեսցո՛ւք եւ խնդրեսցուք եւ վասն հոգւոցն հանգուցելոց: Եւս առաւել վասն հանգուցեալ րաբունապետացն մերոց․ եւ շինողաց սրբոյ Եկեղեցւոյս․ եւ որք ընդ հովանեաւ սորին են հանգուցեալ: Ազատութի՛ւն եղբարց մերոց գերելոց եւ շնորհ առաջիկայ ժողովրդեանս: Հանգի՛ստ հաւատով եւ սրբութեամբ 'ի Քրիստոս կատարելոցն: Եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս՝ աղաչեմք:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ․ Ըստ ամենայնի՛ եւ յաղագս ամենեցուն:

ՍԱՐԿԱՒԱԳՆ․ Օրհնեա՛ Տէ՛ր:

ՔԱՀԱՆԱՅՆ․ Եւ եղիցի՛ ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ փրկչիս մերոյ Յիսուսի Քրիստոսի․

Ընդ ձեզ ✠ ընդ ամենեսեանդ:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ․ Ամէն․ Եւ ընդ հոգւոյդ քում:

ՍԱՐԿԱՒԱԳՆ․ Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:

Then the **Deacon** goes back to his own place and says aloud:

We offer Thee, O Lord our God, thanks and glory for the holy and immortal sacrifice which is on this Holy Table; that Thou grant it to us for holiness of life. Through it, grant love, security and wished-for peace to the whole world, to Thy Holy Church, and to all orthodox bishops; but especially to our venerable Patriarch of all Armenians (N.); and to the Priest who offers this oblation, and let it be for the strength and victory of Christian kings, and of pious princes. Let us also beseech and entreat Thee for the souls of those who are at rest; but especially for the souls of our departed prelates, for the founders of this holy church, and for those who rest under the shadow thereof. Also for the deliverance of those our brethren who are taken captive; and for grace upon the congregation here present; and for the rest of those who have died in Christ, in faith and holiness. Let remembrance of them be made in this oblation, we beseech Thee.

**Choir and People·** In all and for all.

**Deacon·** Master, give the blessing.

**Priest·** And let the mercy of the great God and of our Saviour Jesus Christ,

Be ✠ with you all.

**Choir and People·** Amen. And with Thy Spirit.

**Deacon·** Let us again beseech the Lord for peace.

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Ամենայն սրբովք զորս յիշատակեցաք եւս առաւելապէս· զՏէր աղաչեսցուք:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Վասն մատուցեալ սուրբ եւ Աստուածային պատարագիս, որ 'ի վերայ սրբոյ Սեղանոյս զՏէր աղաչեսցուք:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Որպէս զի Տէր Աստուած մեր որ ընկալաւ զսա 'ի սուրբ երկնային եւ յիմանալի իւր մատուցարանն· զփոխանակն առաքեսցէ առ մեզ զշնորհս եւ զպարգեւս Հոգւոյն Սրբոյ· զՏէր աղաչեսցուք:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Ընկա՛լ կեցո՛ եւ ողորմեա՛· եւ պահեա՛ զմեզ Տէ՛ր քոյին շնորհիւդ:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Կեցո՛ Տէր եւ ողորմեա՛ :

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Զամենասրբուհի զԱստուածածինն զմիշտ Կոյսն Մարիամ, հանդերձ ամենայն սրբովք յիշելով· զՏէր աղաչեսցուք:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Յիշեա՛ Տէր եւ ողորմեա՛ :

ՍԱՐԿԱՒԱԳՆ· Եւ եւս միաբան վասն ճշմարիտ եւ սուրբ հաւատոյս մերոյ· զՏէր աղաչեսցուք:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Տէ՛ր ողորմեա՛ :

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** Let us furthermore beseech the Lord with all the saints of whom we have commemorated.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** Let us beseech the Lord through the holy and Divine Sacrifice which is on this holy Table.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** Let us beseech the Lord our God who has accepted it on His holy, heavenly and spiritual place of offering to send us in return for it the graces and gifts of His Holy Spirit.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** Accept, quicken and have mercy upon us, and keep us by Thy grace, O Lord.

**Choir and People·** Quicken, O Lord, and have mercy.

**Deacon·** Let us beseech the Lord, making mention of the most Holy Mother of God the Ever-Virgin Mary with all the saints.

**Choir and people·** Remember, O Lord, and have mercy.

**Deacon·** Let us beseech the Lord again in unity for our true and holy faith.

**Choir and People·** Lord, have mercy.

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Զանձինս մեր եւ զմիմեանս Տեառն Աստուծոյ ամենակալին յանձն արասցուք:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Քեզ Տեառնդ յանձն եղիցուք:

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մեր, ըստ մեծի ողորմութեան քում ասասցուք ամենեքեան միաբանութեամբ:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Տէ՛ր ողորմեա՛. Տէ՛ր ողորմեա՛. Տէ՛ր ողորմեա՛:

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:

ՔԱՀԱՆԱՅՆ. 'ի ձայն. Եւ տո՛ւր մեզ համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր կարդալ զքեզ երկնաւորդ Հայր, երգել եւ ասել:

Դպիրքն եւ ժողովուրդն բազկատարած եղանակեսցեն զ«Հայր Մեր»ն.

Հայր մեր որ յերկինս ես. սուրբ եղիցի անուն քո: Եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո՛ որպէս յերկինս եւ յերկրի: Զհաց մեր հանապազորդ տո՛ւր մեզ այսօր: Եւ թող մեզ զպարտիս մեր. որպէս եւ մեք թողումք մերոց պարտապանաց: Եւ մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն, այլ փրկեա՛ 'ի չարէ:

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:

ՔԱՀԱՆԱՅՆ. Զի քո է արքայութիւն եւ զօրութիւն եւ փառք յաւիտեանս. Ամէն:

Խաղաղութիւն ✠ ամենեցուն:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Եւ ընդ հոգւոյդ քում:

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Աստուծոյ երկիրպագեսցուք:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Առաջի քո Տէր:

**Deacon·** Let us commit ourselves and one another unto the Lord God Almighty.

**Choir and people·** Let us be committed unto Thee, O Lord.

**Deacon·** Have mercy upon us, O Lord, our God, according to Thy great mercy. Let us all say together with one accord:

**Choir and people·** Lord, have mercy (three times.)

**Deacon·** Master, give the blessing.

**Priest·** And give us with bold voice of speceh to open our mouth to call Thee Heavenly Father, to sing and say.

The Choir and People then sing "The Lord's Prayer" with open arms.

Our Father, which art in Heaven, Hallowed be Thy name. Thy kingdom come. Thy will be done in earth as it is in Heaven. Give us this day our daily bread, and forgive us our trespasses, as we forgive them that trespass against us; and lead us not into temptation, but deliver us from evil.

**Deacon·** Master, give the blessing.

**Priest·** For Thine is the kingdom, and the power, and the glory, for ever and ever. Amen.

Peace be ✠ to all.

**Choir and people·** And with Thy Spirit.

**Deacon·** Let us worship God.

**Choir and people·** Before Thee, O Lord.

Քահանայն խոնարհեսցի, եւ ամենայն ժողովուրդն խոնարհեսցի 'ի ծունկս.

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Քրիստոսիւ Յիսուսիւ Տէրամբ մերով. ընդ որում քեզ Հոգւոյդ Սրբոյ եւ Հօր ամենակալի վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

Եւ քահանայն առցէ զսուրբ Հացն 'ի ձեռն.
Եւ Սարկաւագն ձայնեսցէ բարձր.

*Պրօսխո՛ւմէ:*

Եւ Քահանայն բարձրացուցանէ ակներեւ ամենայն ժողովրդեանն եւ ասասցէ 'ի ձայն.

*'Ի Սրբութիւն Սրբոց:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Միայն Սուրբ, մի՛այն Տէր, Յիսուս Քրիստոս 'ի փառս Աստուծոյ Հօր. Ամէն:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Օրհնեա՛լ Հայր Սուրբ Աստուած ճշմարիտ:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Ամէն:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Օրհնեա՛լ Որդիդ Սուրբ Աստուած ճշմարիտ:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Ամէն:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:*

The **Priest** then himself bows, and the whole congregation kneels down.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** Through Jesus Christ our Lord, with whom to Thee, O Holy Ghost, and the Father Almighty, belong glory, power, and honour, now and ever, world without end. Amen.

Then the **Priest** takes the Holy Bread in his hand, while the **Deacon** says with a loud voice:

Proschume! **(let us attend).**

And the **PRIEST** holding it up in the eyes of the whole congregation, says aloud:

The Holy Things to those who are Holy.

**Choir and people.** One Holy, One Lord, Jesus Christ, in the glory of the God Father. Amen.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** Blessed be the Holy Father, true God.

**Choir and people.** Amen.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** Blessed be the Holy Son, true God.

**Choir and people.** Amen.

**Deacon.** Master, give the blessing.

*ՔԱՀԱՆԱՅՆ. Օրհնեա՛լ Հոգին Սուրբ Աստուած ճշմարիտ:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Ամէն:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Օրհնութիւն եւ փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Ամէն: Հայր Սուրբ. Որդին Սուրբ. Հոգին Սուրբ. Օրհնութիւն Հօր եւ Որդւոյ եւ Սրբոյ Հոգւոյն. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:*

Քահանայն բարձրացուցէ ակներեւ ժողովրդեանն եւ ասասցէ ՚ի ձայն.

*՚Ի Սո՛ւրբ, ՚ի Սո՛ւրբ, պատուական Մարմնոյ եւ յԱրենէ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի: Ճաշակեսցուք սրբութեամբ, որ իջեալ ՚ի յերկնից բաշխի ՚ի միջի մերում: Սա՛ է կեանք, Յոյս, Յարութիւն, Քաւութիւն եւ Թողութիւն մեղաց: Սաղմոս ասացէ՛ք Տեառն Աստուծոյ մերում, Սաղմոս ասացէ՛ք երկնաւոր Թագաւորիս մերում անմահի. որ նստի ՚ի կառս Քերովբէականս:*

Ծածկեն զվարագոյրն եւ երգեն զքաղցրանուագ «Տէր Ողորմեայն». ապա ՍԱՐԿԱՒԱԳՆ ձայնեսցէ.

*Սաղմոս ասացէ՛ք Տեառն Աստուծոյ մերոյ՝ Դպի՛րք, ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգեւորս. զի*

**Priest.** Blessed be the Holy Ghost, true God.

**Choir and people.** Amen.

**Deacon.** Master, give the blessing.

**Priest.** Blessing and glory to the Father, and to the Son, and to the Holy Ghost, now and ever,world without end. Amen.

**Choir and people.** Amen. The Father Holy, the Son Holy, the Holy Ghost Holy; blessing to the Father, and to the Son, and to the Holy Ghost, now and ever, world without end. Amen.

**Deacon.** Master, give the blessing.

Then shall the **Priest** raise it in the eyes of the congregation, and say:

Let us taste in holiness of the Holy, Holy and precious Body and Blood of our Lord and Saviour Jesus Christ who having come down from Heaven is being distributed among us. This is Life, Hope, Resurrection, Expiation, and Forgiveness of Sins. Sing Psalms unto the Lord our God; sing Psalms unto our immortal King of Heaven, who sits in the charriot of Cherubim.

(Then the curtain is drawn, and the "Lord, have mercy" to be sung.) Then the **Deacon** says:

Sing the psalms to our Lord God, O ye choristers, and spiritual songs in a sweet voice of melody; for unto Him

*սմա վայելեն սաղմոսք եւ օրհնութիւնք · ալէլուք եւ երգք հոգեւորք: Պաշտօնեա՛յք հանդերձ երգօք սաղմոս ասացէ՛ք եւ զՏէր յերկինս օրհնեցէք:*

Յարիցեն ամենեքեան 'ի խոնարհիմանէ ծնկացն

*ԴՊԻՐՔ ԵՒ ԺՈՂ· Քրիստոս պատարագեալ բաշխի 'ի միջի մերում, Ալէլուիա՛ :*

*Զմարմին իւր տայ մեզ կերակուր եւ սուրբ զԱրիւն իւր ցօղէ 'ի մեզ· Ալէլուիա՛ :*

*Մատի՛ք առ Տէր, եւ առէք զլոյս· Ալէլուիա՛ :*

*Ճաշակեցէ՛ք եւ տեսէ՛ք զի քաղցր է Տէր· Ալէլուիա՛ :*

*Օրհնեցէ՛ք զՏէր յերկինս· Ալէլուիա՛ :*

*Օրհնեցէ՛ք զնա 'ի բարձունս· Ալէլուիա՛ :*

*Օրհնեցէ՛ք զնա ամենայն հրեշտակք նորա· Ալէլուիա՛ :*

*Օրհնեցէ՛ք զնա ամենայն զօրութիւնք նորա· Ալէլուիա՛ :*

Եւ սարկաւագն գոչէ առ ժողովուրդն եւ ասէ բարձր·
(Բանան զվարագոյրն) :

*Երկիւղի՛ւ եւ հաւատով յառաջ մատիք եւ սրբութեամբ հաղորդեցարո՛ւք:*

*ԴՊԻՐՔՆ ԵՒ ԺՈՂ· Աստուած մեր եւ Տէր մեր, երեւեցաւ մեզ· օրհնեա՛լ եկեալ անուամբ Տեառն:*

belong psalms and blessings, alleluias, and spiritual songs. O ye ministers, sing psalms with songs, and bless the Lord who is in heaven.

They all, who were kneeling, then stand up.

**Choir and People·** Christ sacrificed, is distributed among us, Alleluia.

He gives us His Body for food, and He sprinkles His Holy Blood upon us.Alleluia.

Draw near unto the Lord, and take of His light. Alleluia.

Taste and see how gracious the Lord is. Alleluia.

Praise the Lord in the heavens. Alleluia.

Praise Him on high. Alleluia.

Praise Him, O all ye His angels. Alleluia.

Praise Him, O all ye His Hosts. Alleluia.

Then the **Deacon** calls aloud to the congregation saying:

(While the curtain is drawn aside).

Draw near with fear and with faith and communicate in holiness.

**Choir and People·** Our God, our Lord has appeared unto us. Blessed is He that cometh in the name of the Lord.

Եւ ամենայն արժանաւորքն հաղորդեցին, եւ յետ հաղորդելոյն, Քահանայն խաչակնքեսցէ զժողովուրդն Ընծայիւն եւ ասասցէ·

*Կեցո՛ Տէ՛ր, զժողովուրդս քո. եւ օրհնեա՛ զժառանգութիւնս քո. հովուեա՛ եւ բարձրացո՛ զսոսա յայսմհետէ մինչեւ յաւիտեան:*

(Դարձեալ զվարագոյրն ծածկեն)

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Լցաք ՚ի բարութեանց քոց Տէր. ճաշակելով զմարմին քո եւ զԱրիւն. փա՛ռք ՚ի բարձունս կերակրողիդ զմեզ: Որ հանապազ կերակրես զմեզ. առաքեա՛ ՚ի մեզ զհոգեւոր քո զօրհնութիւն. փա՛ռք ՚ի բարձունս կերակրողիդ զմեզ:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Եւ եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Տէ՛ր ողորմեա՛:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Եւ եւս հաւատով ընկալեալք յաստուածային, սուրբ, երկնային, անմահ, անարատ եւ անապական խորհրդոյս, զՏէառնէ գոհացարուք:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Գոհանամք զքէն Տէր. որ կերակրեցեր զմեզ յանմահական Սեղանոյ քոյ: Բաշխելով զՄարմին եւ զԱրիւնդ ՚ի փրկութիւն աշխարհի: Եւ կեանք անձանց մերոց:*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ. Օրհնեա՛ Տէ՛ր:*

Then all who are worthy shall communicate. After they all have communicated, the **Priest** shall make the sign of the Cross over them with the sacred offerings, and say:

Save Thy congregaton, O Lord, and bless Thine inheritance; govern them and exalt them henceforth and for ever.

(The curtain is drawn again)

**Choir and People·** We have been filled, O Lord, with Thy blessing, in tasting of Thy Body and Blood. Glory be on High to Thee who has fed us; Thou who continually feedest us, send down upon us Thy spiritual blessing. Glory be on High to Thee who hast fed us.

**Deacon·** Let us again beseech the Lord for peace.

**Choir and people·** Lord, have mercy.

**Deacon·** Let us also render thanks unto the Lord for our having received in faith the divine, holy, heavenly, immortal, immaculate, and incorruptible Sacrament.

**Choir and people·** We renfer thanks unto Thee, O Lord, who hast fed us at Thy life giving table, distributing Thy Body and Blood for the salvation of the world and for the life of our souls.

**Deacon·** Master, give the blessing.

ՔԱՀԱՆԱՅՆ առցէ զԱւետարանն սուրբ 'ի ձեռս իւր: Եւ երիցս երկրպագեալ համբուրեսցէ զսուրբ Սեղանն: Եւ իջանելով 'ի մէջ եկեղեցւոյն հանդերձ Սարկաւագօքն ասասցէ զաղօթս 'ի ձայն:

*ՈՐ ՕՐՀՆԵՍ զայնոսիկ՝ որք օրհնեն զքեզ Տէր, եւ սուրբ առնես զյուսացեալս 'ի քեզ:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Օրհնեա՛լ է Աստուած:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Կեցո՛ զժողովուրդս քո եւ օրհնեա՛ զժառանգութիւնս քո. զլրումն Եկեղեցւոյ քո պահեա:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Ամէ՛ն:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Սրբեա՛ զսոսա որք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քոյ. դու զմեզ փառաւորեա՛ Աստուածային զօրութեամբ քով. եւ մի՛ թողուր զյուսացեալս 'ի քեզ:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Ամէ՛ն:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Զխաղաղութիւն պարգեւեա՛ ամենայն աշխարհի. Եկեղեցեաց, քահանայից, թագաւորաց քրիստոնէից, եւ Խորհրդային Հանրապետութեան Հայոց, եւ զինուորեալ մանկանց նոցա, եւ ամենայն ժողովրդեանս:*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ. Ամէ՛ն:*

*ՔԱՀԱՆԱՅՆ. Զի ամենայն տուրք բարիք, եւ ամենայն պարգեւք կատարեալք, 'ի վերուստ են իջեալք առ 'ի քէն. որ ես Հայր լուսոյ. եւ քեզ վայելէ փառք, իշխանութիւն եւ պատիւ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:*

And now the **Priest** shall take the Holy Gospel in his hands, and worshipping three times, he shall kiss the Holy Table. Then preceded by the Deacons, and descending into the Church, he shall say this prayer, aloud:

O LORD, who blessest those that bless Thee, and sanctifiest those that put their trust in Thee.

**Choir and people·** Blessed is God.

**Priest·** Save Thy congregation, and bless Thine inheritance, maintain the fullness of Thy Church.

**Choir and people·** Amen.

**Priest·** Sanctify those who in love came to greet the majesty of Thy House. Glorify us with Thy divine power and forsake not us who have set our hope in Thee.

**Choir and people·** Amen.

**Priest·** Grant peace to the whole world, to the Churches, Priests, Christian kings, to the Armenian Republic, to their armies, and to the whole of this congregation.

**Choir and people·** Amen.

**Priest·** For every good gifts and every perfect gifts are from above and come down from Thee, who art the Father of Light; and unto Thee belong glory, dominion, and honour, now and forever, world without end. Amen.

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ·* *Եղիցի անուն Տեառն օրհնեալ, յայժմհետէ մինչեւ յաւիտեան* (երիցս)։

Եւ ՔԱՀԱՆԱՅՆ դարձցի առ ժողովուրդն եւ ասասցէ 'ի ձայն·

*Կատարումն օրինաց եւ մարգարէից Դու ես Քրիստոս Աստուած փրկիչ մեր։ Որ լցեր զամենայն Հայրական անօրէնութիւնս քո։ Լի՛ց եւ զմեզ Հոգւովդ քով Սրբով։*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Օ՛րթի։*

*ՔԱՀԱՆԱՅՆ, Խաղաղութիւն ✠ ամենեցուն։*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Եւ ընդ հոգւոյդ քում։*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Երկիւղածութեամբ լուարուք։*

*ՔԱՀԱՆԱՅՆ· Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի որ ըստ Յովհաննու։*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Փա՛ռք քեզ Տէր Աստուած մեր։*

*ՍԱՐԿԱՒԱԳՆ· Պրօսխումէ։*

*ԴՊԻՐՔՆ եւ ԺՈՂ· Ասէ Աստուած։*

*ՔԱՀԱՆԱՅՆ· 'Ի ՀՕՐԷ ԼՈՒՍՈՅ·*

*Ի ՍԿԶԲԱՆԷ ԷՐ ԲԱՆՆ եւ Բանն էր առ Աստուած, եւ Աստուած էր Բանն· Նա էր 'ի սկզբանէ առ Աստուած։*

*Ամենայն ինչ նովաւ եղեւ, եւ առանց նորա եղեւ եւ ոչինչ որ ինչ եղեւն։ Նովաւ կեանք էր, եւ կեանքն էր լոյս մարդկան, եւ լոյսն 'ի խաւարի անդ լուսաւորէ, եւ խաւար նմա ոչ եղեւ հասու։*

**Choir and people.** The Lord's name be blessed henceforth and forever. **(Three times).**

Then shall the **Priest** turn to the congregation and say:

O Christ, our God and our Saviour, who art Thyself the fulfilment of the Law and of the Prophets, since that Thou hast fulfilled all the dispensation commended of the Father. Fill also us with Thine Holy Spirit.

**Deacon.** Orthi! (stand up.)

**Priest.** Peace be ✠ to all.

**Choir and People.** And with Thy Spirit.

**Deacon.** Let us hearken with fear.

**Priest.** The Holy Gospel of Jesus Christ, according to John.

**Choir and people.** Glory be to Thee, O Lord our God.

**Deacon.** Proschume! (Let us attend.)

**Choir and people.** It is God who speaks.

**Priest.** From the **FATHER of LIGHT.**

**IN THE** Beginning was the Word, and the Word was with God, and the Word was God. The same was in the beginning with God. All things were made by Him; and without Him was not anything made that hath been made. In Him was life; and the life was the light of men. And the light shineth in the darkness; and the darkness apprehended it not.

Եղեւ այր մի առաքեալ յԱստուծոյ, անուն նմա Յովհաննէս. սա եկն 'ի վկայութիւն զի վկայեսցէ վասն Լուսոյն, զի ամենեքին հաւատասցեն նովաւ. ոչ էր նա Լոյսն. այլ՝ զի վկայեսցէ վասն Լուսոյն:

Էր Լոյսն ճշմարիտ, որ լուսաւոր առնէ զամենայն մարդ՝ որ գալոց է յաշխարհ: Յաշխարհի էր, եւ աշխարհ նովաւ եղեւ, եւ աշխարհ զնա ոչ ծանեաւ:

Յիւրսն եկն, եւ իւրքն զնա ոչ ընկալան. իսկ որք ընկալան զնա՝ ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել, որոց հաւատասցեն յանուն նորա. ոյք ոչ յարենէ եւ ոչ 'ի կամաց մարմնոյ, եւ ոչ 'ի կամաց առն, այլ յԱստուծոյ ծնան:

Եւ Բանն մարմին եղեւ, եւ բնակեցաւ 'ի մեզ. եւ տեսաք զփառս նորա զփառս իբրեւ զՄիածնի առ 'ի Հօրէ լի շնորհօք եւ ճշմարտութեամբ:

ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ. Փա՛ռք քեզ Տէր Աստուած մեր:

ՍԱՐԿԱՒԱԳՆ. Սուրբ Խաչիւս աղաչեսցուք զՏէր զի սովաւ փրկեսցէ զմեզ 'ի մեղաց եւ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ. ամենակալ Տէր Աստուած մեր. կեցո՛ եւ ողորմեա՛:

ՔԱՀԱՆԱՅՆ. Պահպանեա՛ զմեզ Քրիստոս Աստուած մեր՝ ընդ հովանեաւ սուրբ եւ պատուական Խաչիւդ քով 'ի խաղաղութիւն. փրկեա՛ յերեւելի եւ յաներեւոյթ Թշնամեաց. արժանաւորեա՛ գոհութեամբ փառաւորել զՔեզ ընդ Հօր եւ ընդ Հոգւոյդ Սրբոյ. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. Ամէն:

There came a man, sent from God, whose name was John. The same came for witness, that he might bear witness of the light, that all might believe through him. He was not the light, but came that he might bear witness of the light.

He was the true light, even the light which lighteth every man, coming into the world. He was in the world, and the world was made by Him, and the world knew Him not.

He came unto His own, and they that were His own received Him not. But as many as received Him, to them gave He the right to become children of God, even to them that believe on His name; which were born, not of blood, nor of will of the flesh, nor of the will of man, but of God.

And the Word became flesh, and dwelt among us, and we beheld His glory, glory as of the only begotten from the Father, full of grace and truth.

**Choir and people·** Glory be to Thee, O Lord our God.

**Deacon·** Let us beseech the Lord that through His Holy Cross He will save us from our sins, and grant us life by the grace of His mercy. Almighty Lord our God, save us and have mercy upon us.

**Priest·** Guard us in peace, O Christ our God under the protection of Thy invisible enemies, and make us meet to offer thanks and to glorify Thee with the Father, and with the Holy Ghost, now and ever, world without end. Amen.

*ԴՊԻՐՔ եւ ԺՈՂ· Օրհնեցից զՏէր յամենայն ժամ, յամենայն ժամ օրհնութիւն նորա ի բերան իմ:*

Քահանայն խաչակնքեսցէ զժողովուրդն եւ ասասցէ բարձր·

*Օրհնեալք եղերուք 'ի շնորհաց Սուրբ Հոգւոյն· երթա՛յք խաղաղութեամբ եւ Տէր Յիսուս եղիցի ընդ ձեզ ընդ ամենեսեան· Ամէն:*

## ՎԵՐՋ ՍՈՒՐԲ ԽՈՐՀՐԴՈՅ ՊԱՏԱՐԱԳԻՆ



**Choir and people·** I will praise the Lord at all times, His praise shall ever be in my mouth.

Then shall the **Priest** make the sign of the Cross over the congregation, and say aloud:

Be ye † blessed with the grace of the Holy Spirit. Go in peace, and the Lord be with you all. Amen.

THE END OF THE DIVINE LITURGY



